Խոսք՝ Միք. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

# ՈՒՐԱԽ ՆՈՐ ՏԱՐԻ

Երաժշտությունը՝ Լ. ԱՍՏՎԱԾԱՏՐՅԱՆԻ

Իրար ձեռք բռնած,
Տոնենք նոր տարին,
Շնորհավոր ասենք
Մեր նոր աշխարհին։

Կրկներգ

Երգ, պար ու ծիծաղ,
Սիրուն տոնածառ,
Շնորհավոր ասենք
Այսօր մենք իրար։

Իրար ձեռք բռնած,
Տոնենք նոր տարին,
Շնորհավոր ասենք
Մեր նոր աշխարհին։

Նոր տարին ուրախ,
Նոր տարին խաղաղ.
Ջա՛ն, բոլորս եկեք
Պարենք ու խաղանք։

(Կրկներգ)

Հայրենի երկիր
Մեզ հետ դու երգիր,
Փայփայում ես դու մեզ
Մոր նման անգին։

(Կրկներգ)

ՀԼԿԵՄ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՄԱՆԿԱԿԱՆ
ԱՄՍԱԳԻՐ

# ՊԻՈՆԵՐ

№ 12 1957 թ.
ԴԵԿՏԵՄԲԵՐ
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
29-ՐԴ ՏԱՐԻ



## ԱՌԱՋԻՆ ՁՅՈՒՆԸ

*ՍԱՐՄԵՆ*

Բարո՛վ եկար,
Առաջին ձյուն,
Փաթիլներով
Ուրախ-ցնծուն,
Մաղվիր, մաղվիր
Մեր դաշտերին,
Վերմակ դարձիր
Մեր արտերին,
Որ չըմրսեն,
Ջըծարավեն
Հատիկները
Հողի ծոցում։
Բարո՛վ եկար,
Առաջին ձյուն։




ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Կիսաբաց դռնից էլեկտրական վառ լույսի հետ միասին հանդերձասենյակ էին հորդում հանդիսականների ծափահարությունների ու խրախուսիչ բացականչությունները։ Դահլիճը ցնցվում էր։ Դուռը լրիվ բացվեց, և երևաց մարզիչի հուզված, կարմրատակած դեմքը։

— Պատրաստվի՛ր, Գնունի,—դիմեց նա Կամոյին,—գործերն այնքան էլ լավ չեն,—ու նորից ծածկեց դուռը։

Կամոն սկսեց հանվել։ Անծանոթ մեկը նրա հանգիստ, բայց փոքր ինչ գունատ դեմքից դժվար կարող էր գուշակել՝ հուզվում է, թե ոչ։ Բայց Լևոնն զգում էր։ Նա մոտեցավ, բինտով սկսեց կապել ընկերոջ ձեռքի ափերը ու կամացուկ, որպեսզի ուրիշները չլսեն, շշնջաց.

— Դու անպայման կհաղթես, հասկանո՞ւմ ես, ես հո քեզ գիտեմ, դու, ձախով խփի՛ր, Կամո՛, ձախով,—ապա քիչ լռելուց հետո ավելացրեց,—հուզվո՞ւմ ես։

— Այո՛,—անկեղծորեն խոստովանեց Կամոն։ Նա էլի ինչ-որ բան էր ուզում ասել, բայց այդ րոպեին աղմուկն ընդհատվեց ու հնչեց բարձրախոսի ձայնը. «Ռինգ են հրավիրվում № 1 սպորտ-դպրոցի սան Կամո Գնունին և № 2 սպորտ-դպրոցի չեմպիոն Գուրգեն Բալայանը»։

Հաջորդ րոպեին Կամոն բացեց հանդերձասենյակի դուռը, էլեկտրական լապտերների ուժեղ լույսից կկոցեց աչքերը, մոտեցավ ռինգին, բարձրացավ աստիճաններով ու պարանը բարձրացնելով մտավ շրջանակի ներսը։ Դահլիճում հատուկենտ ծափեր լսվեցին։ Շատերը չէին ճանաչում նրան։ Բայց ահա թեթև ոստյունով ռինգ բարձրացավ Գուրգենը և մոտեցավ իր անկյունին։ Ծափահարությունները ծովի ալիքներ ասես լինեին։ Հետո հնչեց մեկի զիլ ձայնը.

— Գուրգե՛ն, բե՛ք տեսնեմ։

Կամոն նայեց իր հակառակորդին։ Նվս մի երկու րոպե և նրանք մարտի կբռնվեն ու իրենցից յուրաքանչյուրը կանի ամեն ինչ՝ դիմացինին հաղթելու համար։ Այդպես է սպորտի օրենքը։ Գուրգենը նստել էր հանգիստ, ոսկեգույն մազերի կարճ խոպոպիկները տարուբերվում էին նրա լայն ճակատի վրա, պարզ, երկնագույն աչքերը փոքր ինչ հեգնորեն ուղղված էին Կամոյին։ Նրանք կարծես ասում էին. «Դե ինչ, տեսնենք...»։

Հակառակորդները շարժվեցին իրար ընդառաջ։ Հնչեց գոնգը։ Նրանք սեղմեցին միմյանց ձեռք ու կանգնեցին դեմ հանդիման՝ կռվի պատրաստ։ Եվ հանկարծ Գուրգենը լավ մեխանիզմի նման միանգամից թեքվեց առաջ, հետո ետ քաշվեց, նորից առաջ ու ձախ ձեռքով հարվածեց Կամոյի դեմքին, իսկ աջով՝ կրծքին ու նորից թեթևաքայլ ճոճվելով նահանջեց։ Այնքան գեղեցիկ էր նրա հարվածը, այնքան ճարպիկ ու հանկարծակի, որ հանդիսականները միայն մի քանի վայրկյան հետո ըմբռնեցին կատարվածը ու ծափերով վարձատրեցին Բալայանին։

Կամոն շուտ ուշքի եկավ։ Ձախ ձեռքը տարավ դեմքի վրայով, ասես հարվածի հետքը ջնջելու համար, շրթունքները ամուր իրար սեղմեց ու առաջացավ դանդաղ, բայց հաստատուն քայլերով։ Գուրգենը ցույց տվեց, թե նահանջում է և նորից հարվածեց... Հնչեց գոնգը։

Կամոն իր անկյունում՝ ոտքերը մեկնած, նստել էր աթոռին, ագահորեն շնչում էր օդը։ Նրա կուրծքը դարբնոցի փուքսի նման ելնում ու իջնում էր։ Լևոնը սրբիչով հով էր անում նրան և միաժամանակ շշնջում.

— Դու պիտի հաղթես։ Ընկեր Պետրոսյանն էլ էր ասում։ Մերոնք բոլորը այստեղ են, քեզ են նայում։ Հոգնեցրու նրան, հետո դու ձախով խփիր, Կամո...

Կարծեցյալների հետ խառնված այնպիսի մի հավատ կար Լևոնի արևառ, հողագույն դեմքին ու աչքերում, որ չնայած ամբողջ հոգնածությանն ու ցավին, Կամոն ժպտաց։

Ամբողջ երկրորդ ռաունդում հարձակվում էր միայն Գուրգենը, իսկ Կամոն պաշտպանվում էր, ճարպկորեն խուսափում հակառակորդի հարվածից, որի ուժն արդեն զգացել էր։ Նա ստիպում էր Գուրգենին վազվզել, անօգուտ ու թույլ հարվածներ տեղալ։ Կամոն այնքան լավ էր պաշտպանվում, որ դահլիճի տրամադրությունը փոխեց։ Հիմա նրան էին խրախուսում, ծափահարում էին, երբ անխուսափելի հարվածի տակ նա մի ակնթարթում փոխում էր դիրքը, ոտքի մի թեթև շարժումով թեքում իրանը և ստիպում, որ Գուրգենն ընկնի պարանների վրա։

— Կամո՛, Կամո՛, Կամո՛,—գոչում էին նրա ընկերները։

— Հերիք է, հիմա դո՛ւ խփիր,—բացականչեց մեկը, և աղմուկի ու մարտի շիկացած մթնոլորտի միջից Գնունին ճանաչեց այդ ձայնը։ Լևոնն էր՝ իր ընկերը։ Նրան թվաց, թե նույնիսկ տեսավ Լևոնի հողագույն, արևառ դեմքը՝ մշտական կրակը աչքերում։ Կամոն նոր թափ առավ։ «Ինչ էլ լինի, պետք է հաղթեմ,—անցավ նրա մտքով և հաջորդ վայրկյանին, երբ Գուրգենը ամբողջ իրանով առաջ ընկավ՝ աջով հարվածելու համար, միայն մի տասնորդական վայրկյան, միայն մի ակնթարթ բացվեց նրա կուրծքը, և Կամոն հարվածեց մի փոքր ցած։ Դահլիճը խորը շունչ քաշեց։ Գուրգենն ընկավ մի ծնկի վրա։ Կամոն ուզեց հարձակվել, բայց դատավորը կանգնեցրեց նրան և նայելով մյուս դատավորներին ու իմանալով նրանց կարծիքը, բարձրացրեց Կամոյի աջ ձեռքը ու հատ-հատ ասաց.

— Բացարձակ գերազանցության համար մրցությունը դադարեցվում է։ Երևան քաղաքի քաշային կարգով պատանի չեմպիոնի կոչումը նվաճեց Կամո Գնունին։

Կամոյի վրայից ասես միանգամից անցավ հոգնածությունը։ Նա թեթև քայլերով մոտեցավ նախկին չեմպիոնին, հաղթողի վեհանձնությամբ ամուր սեղմեց նրա ձեռքը, ընկերների ծափերի ու գոռում-գոչյումի տակ իջավ աստիճաններից, մտավ հանդերձարանը և մոտենալով ընկերոջը՝ Լևոնին, որի դեմքը հրճվանքից այնպես էր փայլում, ասես ինքն էր տարել հաղթանակը, բացականչեց.

— Ահա և հաղթեցի։

Մոտեցավ նաև մարզիչը։ Գոհունակությամբ թփթփացրեց Կամոյի ուսին։ Ժպտաց իր բարի, կոշտացած դեմքով, որի վրա սպորտային բազմաթիվ հանդիպումները իրենց կնիքն էին դրել, ու բարձրաձայն ասաց.

— Ապրե՛ս,—ու դառնալով դեպի մյուսները, ավելացրեց,—ա՛յ թե ինչպես պիտի հաղթել։

Ընկերները փողոց դուրս եկան։ Բոլորը շնորհավորում էին Կամոյին։ Արևի շողերի տակ ձյունը փայլփլում էր ապակու մանր կտորների պես, աչք ծակում։ Գնունուն թվում էր, թե բոլորն էլ իրեն են ժպտում, շնորհավորում, թե նույնիսկ արևն էլ է այսօր մի ուրիշ տեսակ, ավելի ջերմ։ Նա քայլում էր՝ գլուխը բարձր, տարեց սպորտսմենների նման թեթևակի օրորվելով և ժպտում։ Բայց երբ Լևոնը ձյունը գունդ արեց և ծիծաղելով հարվածեց նրա մեջքին, հանկարծ շրջվեց, խոժոռվեց ու անբավական ասաց.

— Ինչո՞ւ ես խփում։ Ամոթ չի՞։

— Պա՜հ, ինչի՞ է ամոթ, որ չեմպիոն ես դրա՞ համար,—կատակեց Լևոնը։

— Բա ի՜նչ,—լրջորեն պատասխանեց Կամոն։— Գուցե դու էլ դառնայիր,—արդեն հեգնեց նա, շրջվեց մի ուրիշ փողոց և գնաց՝ այդպես էլ թեթև օրորվելով, գլուխը բարձր պահած...

— Այ քեզ բա՜ն,—չիմանալով ինչ ասել, կմկմաց Լևոնը։

* * *

Այդ օրվանից Կամո Գնունին միանգամից փոխվեց։ Առաջվա պարզության, անկեղծության ու ընկերասիրության հետքերն անգամ ասես չքացան նրա բնավորությունից։ Որտեղ էլ լիներ՝ դպրոցում, թե տանը, պարապմունքի ժամանակ, թե հավաքույթում, երբ տեսնում էր, որ այլևս իր մասին չեն խոսում, ինքն էր խոսք բաց անում, ոգևորված պատմում իր ճարպկության, ուժի և խորամանկության մասին, մեկին երեք ավելացնում։ Լևոնին դուր չէր գալիս այդ բոլորը։ Ու թեև նա, մոռանալով վիրավորանքը, սովորականի պես մտերմություն էր անում նրա հետ, բայց տեսնում էր, որ Կամոն այլևս այն չէ, և երբ աշխատում էր նրան հասկացնել, որ ճիշտ բան չի անում, Կամոն միշտ կտրում էր նրան.



— Դեռ դու շատ հաց ու պանիր պիտի ուտես, որ ինձ խրատ տաս։

Հետո բանն այնտեղ հասավ, որ Գնունին իրեն զովելու ժամանակ շրջվում էր դեպի Լևոնն ու հարցնում.

— Հիշո՞ւմ ես, Լևոն, այդպես չէ՞ր։

Իսկ սա խոսք չէր գտնում ասելու ու լռում էր։ Դե հեշտ չէ այդպես կանգնել ու բոլորի առաջ ասել, թե ճիշտ չէ, սուտ ես ասում։

Բայց մի անգամ Լևոնը չդիմացավ, ու երբ նրանք մենակ մնացին, ասաց.

— Բա ամոթ չի՞, Կամո, ինչո՞ւ ես ստում։ Լավ, բոլորն էլ գիտեն, որ չեմպիոն ես, էլ ինչո՞ւ ես հնարում։

Կամոն հանկարծակիի եկավ, կարմրեց ու չարությամբ ասաց.

— Ինձ համար նորություն չի։ Բոլորդ էլ նախանձում եք ինձ։

— Ե՞ս էլ։

— Հենց դու էլ։ Սրան տես։ Որ քեզ հետ ընկերություն եմ անում՝ երևակայում ես։

Լևոնը թողեց ու տխուր հեռացավ։ Նա ամեն օր սպասում էր, որ Գնունին կզղջա, կմոտենա իրեն և նրանք կշարունակեն իրենց ընկերությունը։ Բայց Կամոն ասես չէր էլ նկատում նրան։ Նա սկսել էր վատ սովորել, բացակայում էր դասերից, կամ երբ ուշացած ներս էր մտնում և ուսուցիչը հարցնում էր, թե ինչու է ուշացել, նեղացած տոնով պատասխանում էր.

— Բոքսի պարապմունք էր։

Լևոնը լավ գիտեր, որ նա շարունակում է ստել։ Չէ՞ որ նրանք միասին էին պարապում։ Ասենք, համարյա ոչ ոք արդեն չէր հավատում նրան։ Եվ զարմանալի չէր, որ Կամոն այլևս մոտ ընկեր չուներ ոչ դպրոցում և ոչ էլ սպորտսմենների մեջ։ Նա օրվա մեծ մասն անց էր կացնում կինո «Մոսկվայի» մոտ, ֆիզկուլտուրայի կենտրոնական տան մուտքի առաջ։ Կանգնում էր ժամերով, առանց վերարկուի, որ անցորդ-դարձողները տեսնեն նրա պիջակի վրա փայլող չեմպիոնի կրծքանշանը...

Մի օր էլ բռնցքամարտի խմբակի պարապմունքի ժամանակ մարզիչը հայտնեց, որ Չեխոսլովակիայի մայրաքաղաք Պրագայի Պիոներների պալատի պատանի բռնցքամարտիկների խմբակի անդամներից նամակ է եկել իրենց սպորտ-դպրոցի հասցեով։

«Սիրելի բարեկամներ,—գրված էր նամակում,— մենք թերթերից իմացանք, որ ձեր խմբակն առաջին տեղն է գրավել Երևան քաղաքի մրցումներում։ Շատ ուրախ ենք։ Եկեք մրցենք իրար հետ հեռակա կարգով։ Համաձա՞յն եք։ Հաղթող կհամարվի այն խմբակը, որի անդամներն ավելի շատ միավորներ՝ կհավաքեն գարնանային մրցումների ժամանակ։ Ընդունեք, խնդրում ենք, մեր համեստ նվերը՝ մեկ զույգ բռնցքամարտի ձեռնոցներ։ Թող այն ձեզ հաջողություն բերի...»։

— Իսկ ձեռնոցները ո՞ւր են,—աշխուժացան տղաները։

— Ահա,—և մարզիչը գեղեցիկ ժապավենով կապված արկղից դուրս բերեց մի զույգ ձեռնոց։ Իսկապես որ հիանալի նվեր էր՝ կարված բարձրորակ, շագանակագույն կաշվից և երիզված նուրբ, ոսկեգույն թելերով։ Տղաների աչքերը փայլեցին։

— Եվ մենք որոշեցինք,—շարունակեց մարզիչը,— այս ձեռնոցները տալ...—Կամո Գնունին վեր կացավ՝ հպարտ և ուզում էր քայլ անել,—Լևոն Դավթյանին,—վերջացրեց իր խոսքը մարզիչը,—որպես կարգապահ և խոստումնալից բռնցքամարտիկի։

Բոլորը տեսան, թե ինչպես Կամոն փայլկենապես գունատվեց, երերաց, ապա ճակնդեղի նման կարմրեց ու չկարողանալով իրեն զսպել, համարյա բղավեց.

— Իսկ ինչո՞ւ ոչ ինձ, ո՞վ է չեմպիոնը։

— Սպասիր, Կամո, ախր Լևոնը քո ընկերն է,— այս ու այն կողմից վրա տվեցին տղաները։

— Ո՛չ մի «սպասիր», էլ հերիք է,—Կամոն արդեն բղավում էր,—ինձ ամեն տեղ էլ խնդրում են...

— Եթե խնդրում են, կարող ես գնալ,—ուղիղ նրա աչքերին նայելով, հանգիստ ասաց մարզիչը։



— Եվ կգնամ,— Կամո Գնունին քայլերը դեպի դուռն ուղղեց՝ սկզբում արագ, հետո դանդաղելով։ Նա սպասում էր, թե ուր որ է կձայնեն, ետ կկանչեն իրեն։ Բայց բոլորը լուռ էին։ Արդեն դռան մոտ նա ուզեց ետ դառնալ, նույնիսկ կանգնեց, հետո վճռական մի շարժումով բացեց դուռը ու շրխկացնելով դուրս եկավ դահլիճից։

Փողոցում ձյունը սկսել էր հալվել։

* * *

Հարվածը կարճ էր, ուժեղ, և Լևոնը ընկավ ծընկների վրա։ Նրա աչքերի առջև գույնզգույն շրջաններ երևացին, որոնք տարածվելով սկսեցին լայնանալ, վերածվել ավելի ու ավելի մեծ շրջանակների։ Թվաց, թե տախտակամածը դեպի իրեն է գալիս։ Նրան ուշքի բերեց դատավորի ձայնը։

— Մե՛կ, երկո՛ւ, երե՛ք, չո՛րս...

Նա դանդաղորեն բարձրացրեց մի ծունկը ու այդպես էլ մնաց մյուսի վրա, գլուխը կախ, ձեռքերը գետնին հենած։ «Հանգստանամ մինչև իններորդ հաշիվը», կարողացավ մտածել նա, և իսկապես, երբ դատավորը բարձրաձայն արտասանեց.

— Ինը։

Լևոնը օրորվելով ոտքի ելավ։

— Չընկնես, Լևոն,— լսվեցին այս ու այն կողմից,— պահիր քեզ, եղբայր։



Նա ինքն էլ չէր ուզում ընկնել։ Աշխարհում դեռ չի եղել մի բռնցքամարտիկ, որ ինքնակամ մեկնվի հատակին՝ չօգտագործած իր բոլոր, իր վերջին ուժերը։

Բայց հնչեց գոնգը։ Լևոնը օրորվելով հասավ իր անկյունը ու մեկնվեց աթոռին՝ կոպերը. փակ, ծանր շնչելով սրբիչների բերած թարմ օդը։ Նրան շրջապատել էին ընկերները։ Շփում էին դեմքը, խրախուսիչ խոսքեր շշնջում ականջին.

— Լևոն ջան, մի՛ վախեցիր։ Լավ կլինի։

— Մենակ թե մի թող, որ նա քեզ հեռվից հարվածի։ Մոտ գնա։ Նրա ձեռքերը երկար են։

— Թփի՛ր քո էդ չեխական ձեռնոցներով,— կատակում էր մյուսը,— ցույց տուր էդ չեմպիոնին։

Լևոնը զգաց, որ ուժերը վերականգնվում են։ Բացեց աչքերը։ Նրա դիմացի անկյունում նստած էր նախկին իր ընկերը՝ Կամոն։ «Նա էլ է ծանր շնչում» — նկատեց Լևոնը՝ աչքերը չհեռացնելով Գնունու հեգնական աչքերից։ Կամոն մենակ էր։ Ո՛չ ոք չկար նրա մոտ։ Միայն մարտավկան էր ծուլորեն ու անկամ թափահարում սրբիչը։ «Ախր ինչո՞ւ եմ այսօր վախենում,— մտածում էր Լևոնը,— չէ՞ որ ես առաջին անգամը չէ, որ նրա հետ հանդիպում եմ։ Մի՞թե նրա համար, որ չեմպիոն է»։

Եվ երբ նորից հնչեց գոնգը, և Կամոն համարյա երկու ցատկով հասավ նրա մոտ՝ հարվածելու, չըթողնելու, որ ուշքի գա, Լևոնը ետ ընկրկեց, խուսափեց հարվածից ու ինքը հարվածեց ներքևից, աջով։ Հարվածն այնքան անսպասելի էր և ուժեղ, որ Կամոն օրորվեց տեղում։ Դահլիճը թնդաց։

— Ջա՜ն, Լևոն։

— Էլի՛ խփիր դրան։

Կամոն կարմրատակեց, հարձակվեց ամբողջ ուժով, զայրացած, առանց պաշտպանվելու։ Դրանից անմիջապես օգտվեց Լևոնը և կայծակի արագությամբ ձախով ու աջով երկու անգամ ևս հարվածեց։

— Էլի՛, էլի՛, էլի՛,— խլացնելով աղմուկը գոչում էին Լևոնի ընկերները։

— Խփի՛ր այդ մեծամիտին։

Երկրորդ ընդմիջմանը Կամո Գնունու աչքերը այլևս հեգնական չէին։ Ավելի շուտ Լևոնը նրանցում մենակ մնացած մարդու թախիծ նկատեց։ Նորից բոլորը Լևոնին էին շրջապատել, Լևոնին էին խրախուսում։ Կամոն իրոք մենակ էր։ Լևոնը խղճահարություն զգաց նրա նկատմամբ ու մտածեց. «Ինչ վատ է։ Մերոնք չեն սիրում մեծամտության համար, իսկ նոր ընկերներն էլ չեն վստահում։ Նրա մարզիչն այդպես էլ ասել էր. «Չեմ հավատում քեզ, մի տեղից փախչողը մյուսից էլ կփախչի...»։

Երրորդ ռաունդը համեմատաբար սառն անցավ։ Կամոն մի տեսակ ընկճված էր ու խուսափում էր լուրջ հանդիպումից։ Լևոնի հարվածները դի լլում



էին նրան առանց արդյունքի։ Լավ էր պաշտպանվում։ Միայն երկու անգամ նա դուրս եկավ պաշտպանվողի դերից ու հարձակման անցավ։ Եվ երկու անգամն էլ նրա շարժումները ճիշտ էին, կշռադատված, հարվածները՝ ուժեղ և ակնթարթային։ Հիմա էլ շփոթվելու հերթը Լևոնին հասավ։ Եվ հենց այդ պահին.

— Լևոն ջան, խփի՛ր։

— Իրար ետևից,—լսվեցին նոր բացականչություններ։ Եվ Լևոն Դավթյանը նորից աշխուժացավ։ Նա կեղծ նահանջ ցույց տվեց։ Կամոն առաջ նետեց վտանգավոր ձախ ձեռքը։ Լևոնը իսկույն աջ թեքվեց, ուսով ետ մղեց հարվածը և ինքը հարվածեց աջից՝ ծնոտին։

Հենց նույն րոպեին էլ հնչեց գոնգը։ Մարտն ավարտված էր։

Կամոն հազիվ, մի վերջին ճիգով, պահեց իրեն։ Դատավորներն սկսեցին խորհրդակցել։ Դժվար էր վճռել։ Երկուսն էլ արժանի էին հաղթողի կոչմանը։ Իսկ հանդիսականները գոչում էին.

— Լևոնի՜նն է։

— Ինչ էլ լինի, կեցցե՛ս, Դավթյան։

— Չէ, ինչո՞ւ,—լսվում էր մեկի անվճռական ձայնը,—նա էլ էր լավ կռվում։

Դատավորը հաղթանակը շնորհեց Կամո Գնունուն՝ հաշվի առնելով առաջին ռաունդում նրա ավելի բարձր միավորները և Լևոնի երկու անգամ «նոկդաունում» գտնվելը։

Կամոն բարձրացրեց գլուխը՝ սպասելով ծափերի։ Բայց դահլիճը արդեն աղմուկով ցրվում էր։ Նա կանգնած մնաց մենակ, գլուխը կախ։ Եվ գլուխը չբարձրացրեց նույնիսկ այն ժամանակ, երբ Լևոնը մոտեցավ նրան, սեղմեց ձեռքն ու շնորհավորեց հաղթանակի համար։

Կամո Գնունին դուրս եկավ շենքից։ Հանդիսականները հեռանում էին՝ իրենց մեջ առած Լևոն Դավթյանին։ Խոսում էին, ծիծաղում, կատակում.

-- Չէ՛, լավ էր, Լևոն ջան։

— Ա՛յ, կտեսնես, մյուս տարի չեմպիոնը դու կդառնաս։

— Գոռոզությամբ հեռու չես գնա...

Կամո Գնունու ականջին հասան հեռացող խմբի խոսքերը։ Նրա հետ ոչ ոք չկար։ Մենակ էր։ Ու սկսեց լուռ ու մտածկոտ քայլել ծառուղով՝ չնկատելով ճանապարհի ջրափոսերը, աչքը հառած ընկերներով շրջապատված Լևոնին։

Եվ Կամոն նախանձեց նրան։

Նկ. Կ. ՀԱՑԱԳՈՐԾՅԱՆԻ

# ՍՈՒՐԵՆ ՍՊԱՆԴԱՐՅԱՆ 75



— Սո՛ւս արա, ոչինչ չես հասկանում,—շպրտում էր հայրը գիմնազիստ որդու երեսին, երբ բուռն ու կրքոտ վիճաբանությունը հասնում էր գագաթնակետին։ Բայց որդին անզիջում էր, նա չէր ընդունում հոր գաղափարները և անընդհատ վիճում էր, վիճում հոր հետ։ Թեև երկու ավագ որդիներն անցնում էին հոր կողմը, սակայն Սուրենն անպարտ էր մնում։ Նա ճարտար լեզու ուներ և գեղեցիկ դատողություններով կարողանում էր բանավեճի մեջ կռվել «հակառակորդի» դեմ։

Այսպես ուղղամիտ էր և սկզբունքային Սուրեն Սպանդարյանը, իսկ նրա հայրը՝ «Նոր Դար» պահպանողական թերթի խմբագիր Սպանդար Սպանդարյանը հաճախ էր վեճի բռնվում տղայի հետ, բայց կյանքը որդուն բոլորովին այլ ուղիով տարավ։

Դեռ պատանեկան հասակից Սուրենը մասնակցում էր մարքսիստական խմբակներին, իսկ 1902 թվականին արդեն ընդունվեց Ռուսաստանի Սոցիալ-Դեմոկրատական Բանվորական պարտիայի շարքերը։

Այդ տարին էլ նա ընդունվեց Մոսկվայի համալսարանը։ Այդտեղ Սուրենը մասնակցում էր ուսանողական ցույցերին, ժողովներին։ 1903 թվականին Սուրենը բոլշևիկների, Լենինի կողմում էր կանգնած։ Նա հրաշալի կազմակերպիչ և պրոպագանդիստ էր Մոսկվայի Պրեսնյայի շրջանում։

Սկզբից էլ բոլորովին նոր գաղափարների տեր մարդ էր Սուրենը, սնված ռուսական ռևոլյուցիոն մտքով։ Կյանքը նրան շատ բան սովորեցրեց, բայց առավել ևս՝ ռուսական միջավայրը։

Նա շատ էր կարդում, ուղղակի կլանում էր այն ամենը, ինչ առաջավոր էր։ Դեռ մանուկ հասակից էր գրքի սերը նրա մեջ արթնացել; կարդում էր երկար, հարյուրավոր էջանոց գրքերն ավարտում էր մեկ-երկու օրում, կարդում էր ռուսական, եվրոպական կլասիկ գրականությունը, դրանց հետ միասին և քաղաքական գրքեր։ Նա սովորում էր, հարստացնում իր գիտելիքները՝ ապագա մեծ գործին լծվելու համար։

Սուրենը տեսնում էր աշխարհը, ուսումնասիրում նրա անարդարությունները, տեսնում, թե ինչպես ոմանք լավ են ապրում, իսկ ժողովուրդը մնում է խեղճ ու աղքատ։ Եվ նա միացավ լենինյան պարտիային, կատարեց պարտիայի բազմաթիվ հանձնարարությունները։

Ամեն տարի ամառը Սուրենը գնում էր Կովկաս։ Այնտեղ նա ծանոթացել էր տեղի բոլշևիկների հետ, մասնակցում էր նրանց խմբակների աշխատանքներին։

1905 թվականին նա մասնակցեց Մոսկվայի դեկտեմբերյան զինված ապստամբությանը, իսկ 1906 թվականի սկզբից նորից Թիֆլիսում էր։ Ընկերները ճանաչում էին նրան նաև «Տիմոֆեյ» անունով։ Այդ անունը իր ռուս լավ ընկերներից մեկի անունն էր, որ զոհվել էր բարիկադի վրա։ Նրա հիշատակը հարգելու համար Սպանդարյանը նաև այդպես էր կոչում իրեն։

Թիֆլիսում ընտանիքով տեղավորվել էր բարեկամներից մեկի տանը։ Նրա ծանոթներից էր բանաստեղծ Հակոբ Հակոբյանը։

Սուրենը գիտեր, որ Հակոբյանը ռևոլյուցիոն ոտանավորներ է գրում «Կայծ» բոլշևիկյան թերթում։ Նա ամեն անգամ կանգնեցնում էր Հակոբյանին և գրուցում։ Մի անգամ նա արդեն չկարողացավ համբերել և բացահայտ ասաց.

— Թույլ է տարվում «Կայծը», թույլ եք դիմադրում դաշնակցականներին. բացակայում է քննադատական մտրակի հարվածը՝ տիրացու սոցիալիստներին...

Նա հուզվում էր, եռում, զգացվում էր, որ ուզում է գործ կատարել։

Եվ ահա նրան առաջարկում են աշխատել «Կայծում»։ «Կայծը» կարիք ուներ նրա կրակոտ հոդվածներին, նրա ռևոլյուցիոն խիզախ մտքերին։ Սուրենը համեստություն էր անում։ Ընկերները չլսեցին և նրան ընտրեցին թերթի կոլեգիայի անդամ։ Այդ ժամանակ Շահումյանը մեկնել էր պարտիայի 4-րդ համագումար։ Մի տեսնեիր, թե ինչպես նա կպավ գործի, ինչպես էր պայքարում դաշնակների, մենշևիկների և մյուսների դեմ։ Նա այս-

տեղ ռևոլյուցիոն ինչպիսի՜ կըրքոտություն էր ցույց տալիս, ինչպիսի՜ եռանդ, ինչպիսի՜ լայնաշունչ ու անսպառ կարողությունների տեր էր։

Սուրենը գրում էր հոդված հոդվածի ետևից, աշխատողները դժվարանում էին նույնիսկ դրանք տպարան հասցնել։ Նա սկզբում լավ հայերեն չգիտեր, բայց կարճ ժամանակում այնքան լավ տիրապետեց, որ շատերից առաջ անցավ։

Բոլորն զգում էին, որ Սուրենը լուրջ ուժ է, գյուտ է թերթի համար, հավատում էին նրա խոսքին, գնում նրա ետևից։ «Կայծից» հետո նա խմբագրում էր «Լիստոկ կոպեյկա», «Մեր խոսքը», «Օրեր» և այլ թերթեր։

Սուրենը շատ բան արեց ռևոլյուցիայի նոր մարտերի նախապատրաստման համար։ Նա իր ընկերների հետ միասին այնտեղ էր, որտեղ ուղարկում էր պարտիան։ Նա և Սերգո Օրջոնիկիձեն շատ աշխատանք տարան Պրագայի կոնֆերանսին Կովկասում նախապատրաստվելու համար։ 1912 թվականին Սպանդարյանը մասնակցում է այդ կոնֆերանսին և Շահումյանի հետ միասին ընտրվում Կենտկոմի կազմում։

Բայց ցարական լրտեսները քնած չէին։ Նրանք քանի՜-քանի անգամ, ուրիշ շատ ռևոլյուցիոներների հետ միասին, աչքի տակ էին առել և Սպանդարյանին։

Եվ ահա մի օր ցարը ցմահ աքսորի ուղարկեց նրան Սիբիրի Տուրուխանյան երկրամասի Մոնաստիրսկոյե գյուղը։

Հյուսիսային դաժան սառնամանիքը նա տանում էր տոկունությամբ։ Չնայած վատ առողջությանը, Սուրենը անտառում ծառ կտրելու էլ մասնակցեց. ծանր էր ու անտանելի աշխատանքը, Սուրենը սովոր չէր անտառահատի գործին։ 43 աստիճան դաժան ցուրտը քիչ էր մնում նրան ցրտահարեր, բայց աշխատեց, նույնիսկ մնաց անտառի խրճիթում։ Իսկ ամառն ավելի վատ էր. նա սարսափով էր հիշում ամռան անթիվ, անհամար մժեղներին ու մոծակներին, որոնք տանջում էին, հանգիստ չէին տալիս աքսորականներին օր ու գիշեր...

Դաժան էր կյանքը... Բայց Սուրենը միշտ մի բան գտնում էր անելու, նա պարապ չէր։ Աքսորված ռևոլյուցիոն ընկերների հետ հանդիպումներ էր ունենում։ Լծում էր շնասահնակը, փաթաթվում քուրքի մեջ, անցնում վերստեր, ուր նրան սպասում էին Սվերդլովը, Ստալինը, ուրիշ ընկերներ։ Տուրուխանյան մռայլ օրը չէր լուսանում ձյունապատ տափաստանի վրա, բայց այդ մարդիկ մի-մի ջահ էին անծայրածիր խավարի մեջ, մոտեցող ռևոլյուցիայի ջահերը։ Այդ հեռավոր անկյունից, որը թվում էր, թե կտրված էր դրսի աշխարհից, նա միշտ էլ կապված էր Ռուսաստանի, Լենինի, ընկերների, Կովկասի հետ։

Սուրենը հետաքրքրվում էր ռևոլյուցիայի դեպքերի ընթացքով, գրում ու հարցնում էր, թե ինչպես են աշխատում ընկերները, հուզվում էր նրանց կատարածով, հարցնում էր, թե ինչպես են ապրում իր հարազատները։ Հատկապես շատ էր զրուցում երեխաների հետ։ Երբ նա մի ուրախ լուր էր ստանում, անչափ զվարճանում էր, ոգևորվում։

Սուրենը սիրում էր Հյուսիսային երկար գիշերներին կարդալ, լեզուներ սովորել, հատկապես պահանջում էր գրքեր հայոց լեզուն ավելի խորացնելու համար։

Այնքա՜ն քնքշություն, այնքա՜ն զորովանք կար երեխաներին ուղարկած նամակներում։ Կարծես նա մտքի աչքերով իր կողքին էր տեսնում սիրելի երեխաներին, տխրում էր նրանց հետ, շոյում նրանց գլուխները, խրատական խոսքերով հորդորում, որ լավ սովորեն... Նրան շատ էր մտատանջում հատկապես Մարուսկան։ «Ահա նստած եմ լինում կամ պառկած, կարծես թե ոչ մի բանի մասին չեմ մտածում, մեկ էլ տեսար՝ սիրտս ցավեց։ Ի՞նչ պատահեց։ Պատճառն





ի՞նչ է։ Որ մի քիչ սկսում եմ խորանալ,— բանից դուրս է գալիս, որ ամբողջ ցավը քո նամակի և քո թվանշանների մեջ է».— այսպես անմիջական, անկեղծորեն է դիմում Սպանդարյանը Մարուսկային։ Նրան հուզում էր երեխաների ստացած ամեն մի թվանշանը, նրանց կարդացած ամեն մի գիրքը, հետևում էր, թե ինչով են զբաղվում նրանք, խորհուրդներ տալիս խորանալ բնագիտության և լեզուների մեջ։

Նա չէր կորցնում հավատը մեծ Լենինի գործի հաղթանակի նկատմամբ։

— Շատ չի անցնի, երևի, ընկե՛ր,— գրում էր նա,— մենք նորից կհանդիպենք միմյանց և կողք-կողքի կշարունակենք պայքարել մեր սիրած գործի համար...

Այսպիսին էր Սուրեն Սպանդարյանը, բյուրեղյա մարդը, բոցաշունչ ռևոլյուցիոները...

Թույլ, մաշված կազմվածքը, զուրկ ու չարքաշ կյանքը իրենց գործը տեսան։ Սուրենը հիվանդություն ստացավ։ Նա մեռավ 1916 թվականի սեպտեմբերին, իսկ մի տարի հետո՝ 1917 թվականի նոյեմբերի 7-ին (հոկտեմբերի 25) կատարվեց աշխարհացունց մեծ հեղաշրջումը, որի մասին երազում էր խիզախ ռևոլյուցիոները։ Նա այն հերոսներից մեկն էր, որ «կարմիր շապիկով էին ծնվում և սպիտակ սավանի մեջ մեռնում», այն հերոսներից, որոնք «Մեռան, չկորան»։

Նրանց ընտրած մեծ գործը հաղթանակեց մեծ Լենինի ղեկավարած Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։

*Լ. ԱՍՄԱՐՅԱՆ*



Այս լուսանկարում դուք տեսնում եք Կիևի կենտրոնական փողոցը՝ Կրեշչատիկը: Փողոցի երկու կողմերում ձգվում են վեր խոյացող գեղեցիկ ու բազմահարկ շենքեր: Դրանցից շատերը բնակելի են, որտեղ իրենց երեխաների հետ ապրում են Կիևի բանվորները ու ծառայողները, գիտության և արվեստի աշխատողները: Բարեկեցիկ ապարտամենտներում են ապրում նաև Ուկրաինայի մյուս քաղաքների և գյուղերի աշխատավորները:

Սակայն այդպես չէր քառասուն տարի առաջ: Նրանք ապրում էին խարխուլ խրճիթներում, կարիքի ու աղքատության մեջ:

Այժմ Ուկրաինան Սովետական Միության ծաղկուն ռեսպուբլիկաներից մեկն է, որի հետ չեն կարող մրցել Եվրոպայի շատ երկրներ:

Դեկտեմբերի 25-ին լրանում է Ուկրաինայում սովետական կարգերի հաստատման 40 տարին:

# ՐԵԶՆԱՅԱ ՓՈՂՈՑԻ ՏՂԵՐՔԸ

Վ. ՆԱՍՏԱՅԿՈ
(Ուկրաինական գրող)

Մեր խմբի տղերքն են՝ Կոստյան, Վիտկան, Աբան, Պանտելեևը, կամ, ինչպես մենք ենք նրան ասում՝ Պանտան, Վասկան և ես:

Իմ անունը Վիտկա է, բայց ընկերական զրույցի, ինչպես և վեճերի ժամանակ բոլորն ինձ Շեկո են ասում: Դա նրանից է, որ ես, իրոք, շեկ եմ կրակի պես: Շեկ մազերիցս բացի, ես ոչնչով աչքի չեմ ընկնում:

Ա՛յ, Աբան ուրիշ բան է: Նա ուժեղ է, քսան անգամ բարձրացնում է ծանրոտած ռելսը: Իսկ ես՝ հազիվ երկու անգամ և այն էլ դժվարությամբ: Աբան մեր պետն է:

Նրա «տեղակալը» Վիտկան է: Վիտկան ռելսը բարձրացնում է ութ անգամ:

Պանտելեև Կոլկան թլիկ է, կովարար և սնապարծ: Նա ռելսը բարձրացնում է հինգ ու կես անգամ (վերջին՝ անգամ միայն մի քիչ է բարձրացնում), բայց միշտ վիճում է, թե վեց է:

Իսկ Վասկան միշտ մառն է գալիս ոտքերը քըստքըստացնելով և ներքևի շրթունքը դուրս գցած: Վասկան այնպիսի տեսք ունի, որ ասես թե նրա համար աշխարհում ամեն ինչ միևնույն է: Տխուր պահերին ուրախանում ենք նրանով, որ ծիծաղում ենք Վասկայի վրա: Թե նա քանի անգամ է բարձրացնում ռելսը, մենք չգիտենք, որովհետև նա ոչ մի անգամ չի բարձրացրել: Ասում է.

— Է՛հ... ինչո՞ւ: — Եվ վերջ:

Մի օր Պանտելեևը սկսեց պնդել, թե Վասկան մի անգամ էլ ռելսը չի բարձրացնի, թե նա, պարզապես, վախենում է, բայց Վասկան միայն թափ տվեց ձեռքը.

— Է՛հ... թող այդպես լինի:

... Աշնանային խաղաղ երեկո էր: Դռնապանները ավլեցին դեղնած չոր տերևները, կույտեր սարքեցին ու վառեցին: Ծուխը սյան նման երկինք ձըգվեց և վերևում ցրիվ եկավ: Թվում էր, թե ամբողջ երկինքը լցվել է այդ դառնավուն ծխով, և աստղերի առկայծումը նրանից է, որ ծուխը լցվում է նրանց աչքերը:

Մենք նստել էինք պաղ ասֆալտի վրա և խարույկի շուրջը բոլորած՝ կիսաձայն դատողություն էինք անում հերոսության մասին: Բոլորը համաձայնեցին այն բանում, որ դրա համար ամենից առաջ հարկավոր են, իհարկե, ուժ, համարձակություն և ճարպկություն: Լռություն տիրեց: Ամեն մեկը մտածում էր իր մասին, թե ինքն ունի՞ այդպիսի հատկություններ:

Աբան ասաց.

— Ընդհանրապես... եթե, իհարկե, ինձ վիճակվի, հավանական է կկարողանամ:

— Իհարկե,—վրա բերեց Պանտելեևը,—դե դու... այո, ես էլ: Իսկ, ա՛յ, Վասկան չի կարող:

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Բոլորը նայեցին Վասկային։ Բայց նա իբրև պատասխան ծոր տվեց.

— Է՜հ...

— Ա՜խ, դու...— Կոստյան էլ չկարողացավ շարունակել. նա ավելի խիստ խոսքեր էր փնտրում, որովհետև շատ էր վրդովվել Վասկայի անտարբերությունից, և այն էլ մի այնպիսի հարցի նկատմամբ, ինչպիսին սխրագործությունն է։ — Ա՜խ, դու, հաստապոչ ուտիճ։ Նույնիսկ քո մասին մի խոսք չես կարող ասել։

— Այո, Վասկա, ճիշտն ասած խղճուկ ես,— համաձայնեց Աբան։

— Իհարկե, իհարկե,— հաստատեց Պանտելեևը,— խղճուկ է, նրան նույնիսկ Շեկոն կարող է գետին գլորել, դա փաստ է։

— Ճիշտ է, կգցի։ Դե՛, Շեկո, խփի՛ր նրան, հենց այնպես, հետաքրքրության համար,— վրա տվեց Վիտկան։

Բռնցքամարտել ես այնքան էլ չէի կարող։ Վասկան համարյա թե մի գլխաչափ բարձր էր ինձանից, բացի այդ, ես ինչո՞ւ պիտի խփեի նրան։

— Իսկ դուք հենց այնպես՝ թեթևակի, որ իմանանք, թե ով է ուժեղը,— բորբոքում էր Վիտկան։

Էդ ասելն էր։ Ես նետվեցի դեպի Վասկան և բռունցքներովս խփեցի նրան։ Չընկավ։ Մեկ էլ խփեցի, բայց նորից վրիպեցի։

— Այդպես, էլի՛, էլի՛,— ասում էին տղաները,— ապրես, Վիտկա, մի հատ ականջին հասցրու։

Վասկան ինձանից պաշտպանվեց այնպես, ինչպես պաշտպանվում են աներես ճանճերից։ Ես մի քիչ ետ գնացի, թռա և, փակելով աչքերս, գլխով խփեցի նրա կրծքին։

Եվ այստեղ պատահեց անսպասելին։ Վասկան գրկեց ինձ, գետին գլորեց, տրորեց իր տակ, ապա ելավ և փոքրիկ շնիկի պես քիթը վեր ցցած հեռացավ, ասելով.

— Էլ կփորձե՞ս, էլ կփորձե՞ս։ Ես քո խաթրին կպա՞, ասա, կպա՞։

... Դրանից հետո ես ամբողջ երկու օր տանից դուրս չեկա։ Դա իմ կյանքի ամենանամոռայլ օրերն էին։

Ես այնպե՜ս էի ատում Վասկային։ Նույնիսկ երազում տեսնում էի, թե ինչպես վրեժ եմ լուծում ստացածս ամոթանքի համար։

Բայց... խոմ ես չէի կարող հավետ տանը նստել։ Դա ոչ ոք էլ չի կարող անել։ Ես շատ էի ամաչում երևալ տղաների աչքին, նրանք կծիծաղեին վրաս։ Բայց, ի ուրախություն ինձ, ոչ ոք, նույնիսկ Պանտելեևը, ոչ մի խոսք չասաց։ Ես նայեցի Վասկային։ Նրա դեմքը սովորականի պես քնկոտ ու անտարբեր էր։

Առաջվա պես մենք բոլորս միասին աչքակապուկ և այլ խաղեր էինք խաղում, թռցնում Աբայենց աղավնիները, առաջվա պես, երբ տխուր էր լինում, տղաները ծիծաղում էին Վասկայի վրա։

Բայց տարօրինակ՝ բան. ես այլևս նման ծաղր ու ծանակից բավականություն չէի զգում։ Ինձ միշտ թվում էր, թե ծիծաղելով Վասկայի վրա, տղաները մի քիչ էլ ինձ վրա են ծիծաղում։

Նրանք կարծում էին, թե ես ամեն ինչ մոռա-



ցել եմ։ Իսկ ես հիշում էի բոլորը և հարմար առիթ էի փնտրում, որպեսզի թաքուն մի վատ բան անեմ Վասկային, քանի որ բացահայտ կերպով նրանից վրեժ լուծել չէի կարող։

Անցավ աշունը, վրա հասավ ձմեռը, երեխաների համար տարվա ամենաուրախ եղանակը։

Մենք ապրում ենք Ռեչնայա փողոցում։ Այդպիսի փողոց կա Կիևում, որը Դնեպրից բավական հեռու է։ Փողոցն անցնում է զառիթափով։ Նախ միանգամից իջնում է ներքև, ապա բարձրանում սարն ի վեր։ Ձմռանը մեր կողմերը մեքենաներ չեն կարող գալ, որովհետև փողոցը վերածվում է սահադաշտի։

Ինչպիսի սահնակներ ասես, որ այստեղ չես կարող տեսնել. է՛լ գործարանային ու ինքնաշեն, է՛լ ինչպես է բարկացնում ինձ։ Ձեմ կարող նայել, երբ նա բարձունքից սլանում է իր նեղ ու երկար սահնակով։

Ահա, վերջապես, թռչում է նա…

Եվ հանկարծ մոտորի աղմուկ։ Մենք միանգամից շուռ եկանք։ Փողոցի հակառակ կողմից իջնում էր մի ծանր բեռնատար։ Վարորդը աշխատում էր արգելակել, բայց անիվները բուքսում էին և ներքև քաշում մեքենան։

Հիմա Վասկան ամբողջ թափով կթռչի ուղիղ բեռնատարի անիվների տակ։

Նրան մնում էր սահնակի վրայից իրեն մայթ նետել։ Բայց Վասկան շփոթվեց և փորձեց ոտքերով կանգնեցնել սահնակը։ Խենթ, մի՞թե կարող ես կանգնեցնել այդպիսի արագ ընթացքի ժամանակ։

Եվ այստեղ… ես ինքս էլ չգիտեմ, թե ինչպես կատարվեց այդ ամենը… պարզապես ես ամենքից ավելի մոտ էի կանգնած կամրջին, և երբ սահնակը թռչում էր իմ կողքով, ես ամբողջ մարմ-



փայտե ու երկաթե… Բայց ամենալավ սահնակը Աբայինն է։ Սահածողերը թջե խողովակներից են, վրայի տախտակները՝ կաղնու փայտից։ Ոնց որ տանկ լինի։ Աբայի սահնակը անպարտելի է։ Մինչև անցած տարի մեզ մոտ սովորություն կար սահնակային մարտեր անցկացնել։

Թե մեկ և թե մյուս բարձունքից ցած էին սլանում ջոկատները ու իրար բախվում փողոցի կենտրոնում եղած կամրջի վրա։ Բայց այն բանից հետո, երբ Աբայի տանկը ջարդուփշուր արեց հարևան փողոցում ապրող դեղագործի տղայի խախուտ սահնակը, այդ մարտերը արգելվեցին։

Այդ երեկո փողոցում առանձնակի լավ էր։ Ուշ էր արդեն։ Բոլոր տղաները ցրվել էին տները։ Մնացել էր միայն մեր խումբը։ Ժամանակն էր, որ մենք էլ տուն գնայինք։

Բայց ո՛չ, մի անգամ էլ, վերջինը։ Լավ է։ Ահա բլրակի վրա է և Վասկան։ Ա՜խ, այդ Վասկան նով նետվեցի նրանց վրա։ Սահնակը մի կողմ թռավ, իսկ մենք կամրջից ներքև գլորվեցինք։ Կարծեմ ես կորցրի գիտակցությունս։ Երբ ուշքի եկա՝ պառկած էի սառույցի վրա, քթիցս արյուն էր հոսում, իսկ կողքիս, առանց գլխարկի, նստած էր Վասկան։ Ամեն ինչ ողջ և առողջ էր, բացառությամբ սահնակից և մեկ էլ իմ քթից։

Մեր շուրջը հավաքվեցին տղաները, և նրանց աղմուկի միջից լսվում էր մոտավորապես այսպիսի բան.

— Օ՜խ, Շեկո։ Ա՛յ, սա բան է։

Բայց ես գրեթե նրանց չէի լսում։ Նայում էի Վասկային, իսկ Վասկան՝ ինձ։ Եվ մենք լուռ էինք։

Տարօրինակ բան. ինձ մոտ կորավ դեպի Վասկան ունեցածս ամբողջ թշնամությունը։ Կարծես թե «վրեժս» լուծեցի։

Իսկ խեղճ վարորդը այդպես էլ չկարողացավ անցնել մեր զառիթափով։ Հարկ եղավ տրակտոր բերել։

# Փուչ ընկույզը

ԳՐԻՑԿՈ ԲՈՅԿՈ
(Ուկրաինական գրող)

Նկ. Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Երեկո էր. արևը դեռ
Հուրհրում էր հեռվում։
Սեմյոնն ու ես՝ երկու ընկեր,
Կինո էինք գնում։

Դար ու փոսով անցնում էինք
Ու թռչկոտում ուրախ։
Մեզ հանդիպեց մի ծեր տատիկ՝
Ձեռքից զամբյուղը կախ։

Ուշանում ենք։ Ինն է արդեն,
Պետք է վազ տալ քիչ էլ։
Բայց մի շնիկ ցցվում մեր դեմ,
Սկսում է հաչել։

Ու մեկ էլ, թը՜մփ, էդ մեր տատի
Զամբյուղն ընկնում է ցած։
Ընկույզները արահետին
Շաղ են գալիս հանկարծ...

Կանգնում է նա քոռ ու փոշման...
Մենք էլ, դե հո, քար չե՞նք...
— Թո՛ւյլ տուր, տատի՛,—ասի նրան,—
Ընկույզըդ հավաքենք։

Տատը գլխով է անում ինձ,
Իբրև ասում է՝ հա՛...
Մեկ էլ շուրջս եմ նայում, և ի՜նչ,
Մեր Սեմյոնը չկա...

Ծլկել է նա՝ թողած և՛ ինձ,
Ե՛վ տատիկին մեր խեղճ,
Ու կանգնել է. հեռու հեռվից
Ձայն է տալիս այսպես.

— Ի՞նչ ես անում, հե՜րն անիծած,
Ուշանում ենք, թող ե՛կ,
Ինչի՞ս է պետք, թե ուշացած
Պիտի կինո մտնենք։

Բայց ոչ։ Կանգնել նախ և առաջ
Տատիկին եմ օգնում։
.. Ու տատիկը.—Ապրե՛ս,—ասաց,—
Հավաքեցի՜նք իսկույն։

Երևում է լա՜վ տղա ես,
Ծլես-ծաղկես, բալա՜ս,
Ընկույզ վերցրու, ճամփին կուտես,
Ընկերոջդ էլ կտաս։—

Նրան թողնում ու վազեվազ
Սեմյոնին եմ հասնում,
Ու ոչ մի բառ նրան չասած՝
Ընկույզ տալիս իսկույն։

Առնում է նա, մեկ էլ հանկարծ
Քրքջում է.—Դե կե՜ր,
Տե՜ս, քո արած գործի դիմաց
Փուչ ընկույզ են տվել։

Հռհռում է, քրքջում զիլ,
Մեկ էլ դառնում եմ ես.
— Իսկ ավելի լավ ընկույզի
Դու, գուցե և, չարժե՛ս...

Թարգմ. Հ. ՀԱՄՅԱՆ






# ԼՈՒՍԱՏՏԻԿՆ ՈՒ ԾՂՐԻԴԸ

ՕԼԳԱ ՍԱՆԱՀՅԱՆ

Ինչ հրաշալի էր այդ երեկոն։ Դա հենց այն երեկոն էր, երբ իրար հետ ծանոթացան երգիչ ծղրիդն ու գեղեցկուհի լուսատտիկը։ Անուշ բուրում էր օդը, ամբողջ մարգագետինը Թավիշ կանաչով ու գոհար ծաղիկներով էր պատած, իսկ լուսինը, լուսինն այնպես էր կլորացել, մեծացել ու կանգնել մարգագետնի վրա, կարծես հարթել էր ծաղիկների բույրով ու շփոթել ճամփան։

Հենց այդ ժամին, երբ բարձրացավ լուսինը, և քուն մտան մրջյունները, մորեխներն ու թիթեռները, երգիչ ծղրիդը՝ հագած իր սև ու նոր հագուստը, օծված մեխակի նեկտարով, որի արմատի տակ էլ հենց ապրում էր, դուրս եկավ բնից։ Նա շտապում էր դեպի զանգակածաղիկների թաղամասը, ուր տեղի են ունենում իրենց երգչախմբի դասերը։ Նա արագ գնալով դիպչում էր ծաղիկներին ու խոտերին, որոնք նեղացած օրորում էին գլխիկները և կասկածով նայում անքաղաքավարի ծղրիդի ետևից։ Երբ նա ցատկեց առվակի վրայով, հանկարծ ինչ-որ շլացուցիչ լույս խփեց նրա աչքերին։ Նա այնպես վախեցավ, որ մտավ դիմացի տերևի տակ ու կուչ եկավ։ Եվ, երբ սիրտ առավ ու դուրս նայեց, զարմանքից ապշեց։

Մարգարտածաղկի ցածրիկ թփի տակ նստել էր մի փոքրիկ ու քնքուշ էակ, որի կրծքից ցայտում էր այդ կախարդական լույսը, որից նա ինքն էլ ամբողջովին դարձել էր շողշողուն ու լուսափայլ[1]։

Պետք է ասել, որ մեր երգիչը դեռ ջահել էր, մարգագետնի բնակիչներից քչերին էր ճանաչում և այդպիսի լուսաշող գեղեցկուհի երբեք չէր տեսել։

— Դու ո՞վ ես,—հիացած հարցրեց ծղրիդը, մոտենալով նրան։

— Ես լուսատտիկ եմ, անունս էլ Լապտերիկ,— երկչոտ շշնջաց նա։

— Լապտերի՜կ... ինչ հրաշալի անուն, այդ քեզ շատ է սազում, և ի՜նչ աննման կրծքազարդ ունես, այդ ո՞վ է նվիրել։

— Դա այնպիսի կրծքազարդ է, որը ես կրում եմ իմ ծննդյան օրից, առանց նրան ես ի՞նչ կանեի այս մութ խոտերի մեջ,—ասաց Լապտերիկը նայելով շուրջը։—Ինչ երկյուղալի՜ է այստեղ։

— Ես երգիչ ծղրիդն եմ և հաճախում եմ երգչախմբի դասերի։ Մի՞թե երբեկ չլսեցիր իմ երգը։ Իսկ անունս էլ Ծնծղաթեփկ է,—գլուխ տալով ասաց նա։

— Մեր խորունկ բնի մեջ ի՞նչ երգի ձայն կարող է հասնել, ես նույնիսկ լուսինն էլ լրիվ չեմ տեսել և միայն այժմ եմ տեսնում, օ՜հ, ինչ մեծն է նա։ Այնինչ մեր ճեղքից նա թվում էր իսկ և իսկ մեր ճեղքի չափ։ Եվ որքա՜ն լուսատտիկներ կան այնտեղ, վերևում,—նայելով աստղերին, ասաց Լապտերիկը։

— Այո...—ասաց Ծնծղաթեփկը,—բայց ես չէի ցանկանա, որ դու էլ այդպես բարձրում ապրեիր, որովհետև, ի՞նչպես կկարողանայինք իրար հետ ծանոթանալ։

Ավելի պայծառ սկսեցին ցոլալ Լապտերիկի շողերը, երևում էր, որ նա նույնպես ուրախ էր Ծնծղաթեփկի հետ հանդիպելու համար։

— Իսկ դուք չե՞ք երգի ինձ համար մի երգ, միայն մի երգ,—խնդրեց Լապտերիկը։

— Ինչո՜ւ չէ,—ուրախացավ ծղրիդը,—բայց արի թռչենք դեպի լճակ, այնտեղ այնպես լա՜վ է։

[1] Լուսատտիկներից մի տեսակի լուսարձակ օրգանը գտնվում է կրծքի վրա:

Հենց այնտեղ էլ կերգեմ,—ասաց մեր անհոգ երգիչը, որ արդեն մոռացել էր դասի գնալու մասին։

— Թռչե՜լ,—տխրությամբ ասաց Լապտերիկը,—մեր ցեղի աղջիկներս զուրկ ենք թևերից և քիչ ենք դուրս գալիս բնից, այդ մեր տղաներն են, որ թևավոր են, ուր ասես կարող են թռչել։

Ծնծղաթևիկը խղճաց Լապտերիկին, որ թևեր չուներ ու ասաց.

— Բայց մի՞թե հիմա տխրելու ժամանակ է, սիրունիկ Լապտերիկ. նայիր, թե ինչպես են լուսնի շողերը ընկել խոտերին, լսիր, թե ինչ է երգում զեփյուռը ծաղիկներին,—և այլևս չդիմանալով, ինքն էլ սկսեց երգել։ Նա այնպես ուրախ էր երգում, այնպես ոգևորված, որ Լապտերիկը խոսք չէր գտնում իր հիացմունքը հայտնելու, բայց հետո զարմացած հարցրեց.

— Այդ ի՞նչ է, դու երգում ես, բայց բերանդ փակ է։

— Այո, մի՞թե չգիտես, որ ես թևերով եմ երգում և ոչ բերանով, ապա նայի՛ր։

Եվ Ծնծղաթևիկը մեջքի վրա դարսված փոքրիկ թևերը կիսաբաց անելով, սկսեց քսել միմյանց ու շարունակեց երգել։

— Ինչ զարմանալի երգիչ ես դու, ինչ լա՜վ ես երգում դու,—հրճվում էր Լապտերիկը։

Հանկարծ նրանց գլխավերևում զիգզագ թռիչքով ինչ-որ լույս պտտվեց։

— Հայրս է, ինձ է փնտրում,—ասաց Լապտերիկը ճանաչելով հորը, որն իջավ ցած, դստրիկին վեր առավ ու թռավ։

Ծնծղաթևիկը շատ վշտացավ, որ այդպես անսպասելի բաժանվեց Լապտերիկից և, քանի որ դասից ուշացել էր, թռչելով հասավ զանգակածաղիկների թաղամասը, ուր նրան դիմավորեց զայրացած ուսուցիչը՝ պարոն Ծղրիդը։

— Տաս տարի է դաս եմ տալիս և դեռ այսպիսի անկարգ աշակերտ չեմ տեսել,—ասաց նա թափահարելով բեղերը, որոնք նրա մարմնից երկար էին,—այլևս իմ աշակերտը չես,—հրամայեց նա։—Գնա և երգիր այնտեղ, որտեղ երգում էիր։

Եվ այլևս ոչինչ չցանկանալով լսել, պարոն Ծղրիդը բարձրացավ մի կտրտված ծառի բնի, ուղղեց ակնոցները, բացեց նոտաների տետրը և բեղերի ծայրերը բռնելով առջևի ոտներով, սկսեց չափ տալ։ Նույն վայրկյանին հարյուրավոր ծղրիդներ, որոնք ցրված էին խոտերի մեջ, միահամուռ կերպով սկսեցին ճռռալ ու երգել, այնպես, որ մարգագետինը լցվեց նրանց ձայնով։

Միայն խեղճ Ծնծղաթևիկն էր, որ լուռ էր, նա թաքնվել էր մի զանգակածաղկի տակ ու վշտից չգիտեր, թե ինչ աներ։

Նա սկսեց թաքուն ու կամացուկ երգել, երգել վշտից, ինչպես այդ պատահում է նույնիսկ մարդկանց հետ։ Բայց հետո ընկերների համերգի ազդեցության տակ, զգուշությունը մոռացավ ու կամաց-կամաց ձայնը բարձրացրեց այնպես, որ մոտիկ եղած զանգակածաղիկներն սկսեցին զանգի նման ղողանջել։

Թե որքան էր երգել, չգիտեր, միայն երբ դադարեց երգելուց, լուսինն արդեն սուզվում էր լճակը, և սկսել էր լուսանալ։ Նա միայն այժմ զգաց, որ երգչախմբի իր ընկերները լուռ, հիացած իրեն են նայում ու ավելի վախեցավ։ Բավական չէր, ուսուցչի հրամանը չէր կատարել, դեռ այդպես էլ ձայնը գլուխն էր գցել... և նա սկսեց փախչել։

— Բերեք նրան ինձ մոտ,—լսվեց ուսուցչի ձայնը։

Երկու ծղրիդ վրա վազեցին, բռնեցին նրան ու քաշելով սկսեցին տանել։ «Հիմա ի՞նչ պատասխան պիտի տամ,—մտածում էր Ծնծղաթևիկը,—իսկ եթե հրամայի ծեծել...»։

Բայց ծեր ուսուցչի դեմքն այնպես բարի էր, նա հուզմունքից ամբողջովին դողում էր, ու քիչ էր մնում ակնոցը քթից ընկներ։

— Որդյակ իմ, այդ մի՞թե դու էիր երգում, ի՜նչ հրաշալի ձայն, ի՜նչ ճաշակ... Երբեք դու այդպես չէիր երգում. այդ ի՞նչ հրաշք է կատարվել...

Իսկ մեր ջահել երգիչը գիտեր, իհարկե, թե ինչն





է հրաշքի պատճառը… Այդ ամբողջ գիշեր նա Լապտերիկին էր հիշել, նրա մասին երգել…

— Բայց դու, տղաս, պարտաճանաչ եղիր, դասերից մի՛ ուշացիր,— խրատում էր ուսուցիչը։

Երբ Ծնծղաթևիկը բաժանվելով ուսուցչից, մտավ իր բույնը, այնքան հոգնած էր, որ իսկույն քնեց։

Քնեց Ծնծղաթևիկը և երազում տեսավ չքնաղ լուսատտիկին։

Տեսավ, որպես թե երեկո է, կապույտ ու հանդարտ երեկո։ Մարգագետնի ծայրից բարձրանում է իրենց ծանոթ ու սիրելի լուսինը, ինքն ու Լապտերիկը նստած են միասին նույն մարգարտածաղկի մոտ ու նայում են լուսինին։ Իսկ լուսինը ժպտում է նրանց, աչքով անում ու սկսում մեծանալ, մեծանալ ու իջնել։ Ինքն ու Լապտերիկը վազում, ցատկում են լուսնի վրա ու լուսնյակ նավակով լողում երկնքով։ Ինչ լա՜վ է, ինչ ուրախ են նրանք։ Ցածում եղած բոլոր ծղրիդները, բզեզներն ու մոծակները իրենց են նայում ու նախանձում։ Բայց հանկարծ որտեղից-որտեղ, լուսնի վրա հայտնվում է մի անճոռնի գորտ և… կուլ է տալիս Լապտերիկին։ Ծնծղաթևիկը սարսափած ճչում է ու լուսնից ընկնում…

Ծնծղաթևիկն արթնացավ և այլևս չկարողացավ քնել։ Նրան տխրեցրել էր չարագուշակ երազը։ Նա հանկարծ այնպես ցանկացավ տեսնել Լապտերիկին, որ իսկույն դուրս ցատկեց բնից։ «Արդյոք Լապտերիկը ո՞ր կաղնու ճեղքում է ապրում», մտածեց Ծնծղաթևիկը։ Նա թափառեց այնքան, մինչև օրը մթնեց, այդ ժամանակ նա թռավ դեպի մարգագետնի եզրին գտնվող պուրակը և իջնելով առաջին իսկ պատահած կաղնու մոտ, սկսեց երգել։

Ծի՜ռռ, ծի՜ռռ…
Ո՞ւր է Լապտերիկս,
Լուսատտիկս…

Երգեց, երգեց, բայց նրան ոչ ոք պատասխան չտվեց։ Ո՛չ, այդ կաղնու վրա չէր ապրում պայծառ Լապտերիկը։ Նա թռավ դեպի մյուս կաղնին և նորից երգեց։ Այստեղ էլ նրան ոչ ոք լուր չտվեց։ Վերջապես նա թռավ դեպի ամենածեր ու մամռոտ կաղնին և շարունակեց երգել ու կանչել։ Հենց նոր էր սկսել երգել, երբ ծեր կաղնու կեղևի ճեղքից մի աղոտ ու գողտրիկ լույս երևաց։ Այդ նա էր, Լապտերիկը։ Ծնծղաթևիկն ավելի արագ սկսեց իրար քսել թևերը ու ինչքան ուժ ուներ, ձայնը բարձրացրեց, այնպես, որ կաղնու փչակում ննջող սկյուռի ձագերն արթնացան ու զարմացած գլուխները փչակից դուրս հանեցին։ Քիչ հետո Լապտերիկը կաղնու բնի վրայով իջավ ցած։

Նրանք կատակելով սկսեցին վազվզել, պահմտոցի խաղալ ու իրար վրա ծաղկեփոշի թափել, իսկ երբ հանդիպեցին իրենց ծանոթ մարգարտածաղկին, նստեցին նրա տակ։

Նորից աստղերն ու լուսինը զարդարել էին երկինքը, նորից հովն եկել էր սարերից, իջել ցած ու ծաղիկներին հեքիաթ էր պատմում։ Այդ ժամանակ, Ծնծղաթևիկը կարո՞ղ էր չերգել։ Եվ նա սկսեց երգել Լապտերիկի մասին, իրենց բարեկամության մասին։ Նա այնքան երգեց, մինչև լուսնյակը սուզվեց լճակը և ծագեց արևը։ Այդ ժամանակ նրանք միևնույն ծաղկեբաժակից ցող ըմպեցին, որը նրանց թվաց այնքան համեղ, որից ավելի համեղ ոչինչ չգիտեին աշխարհում։

— Այսօրվանից մենք անբաժան ենք,— ասաց Ծնծղաթևիկը։

— Այսօրվանից մենք միասին ենք,— կրկնեց Լապտերիկը։

Առավոտյան մարգագետնի բոլոր բնակիչները, Ծնծղաթևիկի գիշերային երգերից արդեն գիտեին նրանց բարեկամության մասին։

— Ո՞վ է լսել էդպես բան։ Ծղրիդն ո՜վ, Լուսատտիկն ո՜վ,— տզզում էին անվերջ բամբասկոտ մոծակներն ու բզեզները։

Բայց Ծնծղաթևիկն ու Լապտերիկն այնքան ուրախ էին, որ չէին լսում նրանց և շարունակում էին լուսնյակ գիշերներին երգել ու զվարճանալ։

Մի գիշեր էլ, երբ նորից միասին էին, և երբ Ծնծղաթևիկը Լապտերիկի շողշողուն ցոլքերի տակ իր երգերն էր հորինում, հանկարծ ինչ-որ խշշոց լսվեց։ Հետո լսվեց Լապտերիկի ճիչը, և Ծնծղաթևիկն այն տեսավ, որ մի մեծ մորեխ հափշտակեց Լապտերիկին ու սլացավ։ Ծնծղաթևիկն ընկավ ավազակի ետևից։ Նա թռչում էր, թռչում ու լսում Լապտերիկի լացը։

— Փրկի՜ր ինձ, բարեկա՛մ, փրկի՜ր ինձ, թանկագի՜նս…

Ա՜խ, ինչքան մեծ են այդ ավազակ մորեխի թևերը, Ծնդղաթևիկի համար դժվար է նրան հասնելը։ Բայց նա հույսը չի կորցնում, ինչ էլ որ լինի, նա պիտի ազատի Լապտերիկին ու շարունակում է ուժ տալ թևերին։ Ահա՛, ահա՛, քիչ մնաց, որ հասնի... բայց երբ թռչում էին անտառի վրայով, այնտեղից դուրս թռան երկու ուրիշ մորեխներ, որոնք հավանաբար ավազակի ընկերներն էին և հարձակվեցին Ծնդղաթևիկի վրա։ Ծնդղաթևիկը, գազազած ծակեց մեկի թևը, կծեց մյուսի աչքը, բայց նրանք այնքա՜ն ծեծեցին, որ թևերը ջարդեցին, և խեղճն ուշագնաց ընկավ ցած։

Մինչդեռ ավազակ մորեխը Լապտերիկին տանում էր ու տանում։ Նա անցավ անտառը, անցավ երեք սար և այնտեղ, ուր սկսվում էին ոսկեզօծ արտերը՝ ցած իջավ։ Լապտերիկը, որը վախից ուշաթափվել էր, աչքերը բացեց միայն այն ժամանակ, երբ ավազակը մոտեցավ մի ոսկեղեն դարբասի և սկսեց ծեծել։ Դարբասն անմիջապես բացվեց, և նրանք ներս մտան։

«Այս ո՞ւր ընկա», սարսափով մտածեց Լապտերիկը։

Մորեխը նրան տարավ մի ոսկեղեն սրահի միջով, ապա երկրորդի, երրորդի ու դրեց նրան բազմոցի վրա, որը նույնպես ոսկուց էր։ Ապա կանգնեց սրահի մեջտեղում և ուժգին սուլեց։ Նույն րոպեին ցատկոտելով եկան բազմաթիվ ուրիշ մորեխներ, որոնք տեսնելով շողշողուն Լապտերիկին, զարմացած կանգ առան։

— Ահա՛, այս պալատի թագուհին,— գոչեց ավազակ մորեխը՝ պալատի տերը։

Բոլորը կռացան, գլուխ տվին լուսատտիկին, որի կայծկլտուն ցոլքերից ոսկեղեն պալատն ավելի էր շողշողուն դարձել։ Մորեխներն սկսեցին երգել ու պարել, իսկ ամենից շատ երգում էր պալատի տերը։

Նա մեծ թռիչքներ էր գործում ու սուլում այնպես, որ լուսատտիկը վախից կպչում էր բազմոցին։

Երբ վերջապես մորեխների երգն ու ուրախությունը դադարեց, պալատի տերը մոտեցավ Լապտերիկին, վառեց երկար ծխամորճը, ծխեց, ծխեց ու ասաց.

— Լսեցի՞ր, Լապտերիկ, թե ինչպես լավ էի երգում, ինչպես լավ էի սուլում։ Այնպես չէ՞։ Մի՞թե քո հիմար Ծնդղաթևիկը կարող է այդպես երգել, ավելի լավ է մոռանաս նրան։ Տեսնու՞մ ես, այս ոսկեղեն պալատը ամբողջովին քոնն է։

Լապտերիկը ձայն չհանեց. նրա գլուխը ցավում էր մորեխի երգից։ Երբ սեղան բացեցին, նա ոչինչ չկերավ և գիշերն էլ չքնեց։ Նա հիշում էր Ծնդղաթևիկին, հիշում լուսնյակ գիշերները, կանաչ մարգագետինն ու անվերջ լալիս։

Այդպես անցան օրեր։ Լապտերիկը չէր հաշտվում այդ կյանքի հետ։ Ճիշտ է, մորեխի պալատում բոլորը նրան սիրում էին ու կատարում նրա հրամանները, բայց նրա համար անտանելի էր իր գերի վիճակը։ Իսկ ամենից անտանելին պալատի տերն էր, որ հափշտակեց իրեն իր սիրելի բարեկամի մոտից։

Լապտերիկին մտահոգում էր, թե արդյոք ինչո՞վ էր զբաղվում պալատի տերը, որն առավոտյան ծեգին դուրս էր գնում և վերադառնում երե-





կոյան՝ հոգնած ու փոշոտ։ Այդ ի՞նչ աշխատանքով էր զբաղվում, որ տուն գալուց հետո, շարունակ պարծենում էր ու իրեն գովում։ Եվ ինչ էլ շատակերն էր, նրա մեծ ու մշտական շարժուն բերանը ահ՜ էր ազդում Լապտերիկին։

Իսկ ի՞նչ եղավ մեր դժբախտ Ծնծղաթևիկը։

Երբ մորեխների կողմից ծեծված ու ջարդված ցած ընկավ, նրան գտան իր ցեղակից ծղրիդները, սկսեցին խնամել ու բուժել։ Նրան կերակրում էին խխունջի մսով, որը նրանց ամենասիրելի և բուժիչ ուտելիքն էր։ Անցան օրեր, Ծնծղաթևիկը ոտքի կանգնեց, բայց թևերը դեռևս չէին առողջանում։ Նա միշտ տխուր էր, և երբ իջնում էր երեկոն, դուրս էր գալիս բնից ու կանչում։

Ծր՜ռռ, ճր՜ռռ...
Ո՞ւր է Լապտերիկս,
Լուսատտիկս...

Վերջապես Ծնծղաթևիկը կարողացավ թռչել։ Գիշերները թռչում էր ու ամեն հանդիպողից Լապտերիկի մասին հարցուփորձ անում, իսկ երբ լուսանում էր, մի տերևի կամ հողակոշտի տակ քուն էր մտնում ու նորից շարունակում որոնել։ Բայց դժբախտաբար իր բարեկամի տեղը ոչ ոք չգիտեր։

* * *

Լապտերիկի համար վերջնականապես անտանելի դարձավ մորեխի պալատում ապրելը։ Մորեխի ամենօրյա պատմություններից Լապտերիկը վերջապես հասկացավ, որ նա զբաղվում էր ավերիչ գործով՝ արտերը, ծաղիկներն ու խոտերը կրծելով, ոչնչացնելով։

— Կա՞ դրանից ավելի ստոր բան,— զզվանքով ասաց նրան Լապտերիկը։

— Հի՛, հի՛, հի՛, ես ուժեղ եմ,— ծիծաղում էր ավազակը,— իմ ծնոտները գերանդու պես սուր են, ա՛յ, նայիր...— պարծենում էր նա, ցորենի ցողունը խշրտոցով ծամելով։

Բայց հաջորդ օրը երեկոյան նա պալատ վերադարձավ հիվանդ։ Նա հարբածի նման գլորվում էր ու անվերջ սուլում։ Պարզվեց, որ ավազակը ագահությունից կերել էր ինչ-որ անծանոթ բույսի ցողուն և թունավորվել։

Պալատն իրարով անցավ։ Լապտերիկն օգտվելով շփոթությունից, ծածուկ բաց արեց պալատի դարբասը և հանգցնելով իր լապտերը, դուրս վազեց։

Նա սկսեց փախչել ու փախչել։ Շատ էր գնացել, թե քիչ, մեկ էլ լսեց, որ պալատի ճամփով մորեխներ են սլանում։ Կա-չկա իրեն են փնտրում։ Լապտերիկը վախից կծկված թաք կացավ մի քարի տակ։ Եվ երբ մութն ընկավ ու մորեխները նրան չգտնելով վերադարձան պալատ, այդ ժամանակ միայն նա վառեց լապտերն ու ճանապարհ ընկավ։ Գիշերը գնում էր, իսկ ցերեկը թաքնվում։

Ծնծղաթևիկն էլ անվերջ թռչում էր ու կանչում, կանչում ու երգում.

Ծր՜ռռ ճր՜ռռ...
Ո՞ւր է Լապտերիկս,
Լուսատտիկս։

Ասում են, որ մինչև օրս Ծնծղաթևիկն ու Լապտերիկը չեն գտել իրար, բայց նրանք երբեք չեն հուսահատվում։

Դուք տեսե՞լ եք գիշերը խոտերի մեջ շողշողուն լուսատտիկին, դուք լսե՞լ եք ծղրիդի անդադրում երգը արտում ու դաշտում։ Ահա ուրեմն, տեսնո՞ւմ եք ինչպիսի նվիրված ընկերներ են նրանք, ինչպես համառ են նրանք...



## ՆԿԱՐԸ

ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ես ներկերը առա
Ու մի թղթի կտոր,
Նկարեցի արագ
Երկու կարմիր խնձոր։

Հետո փոքրիկ տնակ
Ու ծառ նկարեցի,
Ջուլալ ջրով առվակ
Եվ հրեղեն մի ձի։

Երբ ամեն ինչ արդեն
Ներկել էի կարգին,
Ես նկարս տարա
Փակցրեցի պատին։

Եղբայրս ասաց.— Ինչ լավ
Քարտեզ է նկարել,
Մայրիկն ասաց.— Բնա՛վ,
Սա պարտեզ է, Կարեն։

Տատիկն ասաց.— Մեռնեմ
Փոքրիկ նկարչիս,
Բալիկ, ասա տեսնեմ,
Սա իմ կծիկը չի։

Քույրիկս ասաց.— Կարծես
Նման է առյուծի,
Հայրիկն ասաց.— Իսկ ես
Լավ տեսնում եմ մի ձի.

Հետո ինչ-որ բաներ,
Խոտի դեզեր կարծես.
Ի՞նչ ես լռել, Դանիել,
Տեսնենք դո՞ւ ինչ կասես։

Դե, ես ի՞նչ ասեի,
Ես բարձրացա արագ
Եվ նկարս պատից
Սուս ու փուս ցած առա։



Ով շուտ քնի;
Շուտ արթնանա՝
Հիվանդություն
Չի ունենա։ (Անգլերենից)



# Տատիկի ՀԵՔԻԱԹԸ

Ա. ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

Հրանտիկն ու Համլիկը շատ էին ցանկանում բակ դուրս գալ, բայց որովհետև դրսում սոսկալի ցուրտ էր, մնացին տանը և խնդրեցին տատիկին՝ իրենց համար մի լավ հեքիաթ պատմել։

Տատիկը նրանց խնդիրքը չմերժեց։ Խոհանոցում իր գործերը վերջացնելուց հետո, նստեց բազմոցին ու սկսեց…

Պատմում էր տատիկը…Համլիկը իր փոքրիկ կզակը զույգ ձեռքի ափերին հենած՝ ականջ էր դնում։ Բայց Հրանտիկը չէր լսում։ Շարունակ ինչ-որ բանով էր զբաղված։ Կամ փիսոյի պոչիցն էր քաշում, որն իր համար բազմոցին պառկած, հանգիստ մռռացնում էր, կամ էլ քրոջ մազերիցն էր ձգում՝ խանգարելով նրան լսել։

Տատիկը հաճախ ընդհատում էր պատմությունը։

— Ախր, լսիր, է՜, Հրանտիկ ջան… Չէ՞ որ ձեզ համար եմ պատմում։

— Դե ես լսում եմ, է՜լի…—անտարբերությամբ պատասխանում էր Հրանտիկը, բայց հենց տատիկը շարունակում էր ընդհատված պատմությունը, նա նորից մի որևէ բանով էր զբաղվում։

Եվ ահա տատիկը ավարտեց հեքիաթը ու վերջում ավելացրեց.

— Երկնքից երկու խնձոր ընկավ… Մեկը՝ պատմողին, իսկ մյուսը՝ լսողին։

— Վա՜յ, ինչ լավ է, երկու խնձոր… —ուրախ բացականչեց Համլիկը։

— Ոչ թե երկու, այլ երեք։ Չէ՞ որ միշտ էլ հեքիաթի վերջում երեք խնձոր է ընկնում,—վիրավորված մրթմրթաց Հրանտիկը, որ միայն հեքիաթի վերջին մասն էր լսել։

— Ճիշտ է։ Հեքիաթի վերջում միշտ էլ երեք խնձոր է ընկնում, բայց էս անգամ երկուսն ընկավ,—կրկնեց տատիկը ակնոցը շտկելով։

— Մեկը ինձ, իսկ մյուսը տատիկին,— վրա տվեց Համլիկը։

— Իսկ ի՞նձ, բա ինձ համար ոչինչ չընկա՞վ, —վշտացած հարցրեց Հրանտիկը։

Տատիկը ժպտաց ու ոչինչ չպատասխանեց։

— Այ, դու ամբողջ ժամանակ իմ մազերից էիր քաշում ու հեքիաթն էլ չէիր լսում, դրա համար էլ քեզ խնձոր չընկավ,—պատասխանեց Համլիկը և ուրախ թռչկոտելով դուրս գնաց։

# ՆԱՊԱՍՏԱԿԻ ԱԿԱՆՋՆԵՐԸ

Ա. ԴԱՐԲՆԻ

Ասում են, թե հին օրերում,
Մի շլդիկ կար մեր ձորերում։
Գիշերները
Լուռ, գողե-գող,
Շուրթը կախած,
Ու սիրտը դող,
Նա մտնում էր մեծ բոստանը
Ու քեֆ անում, ոնց իր տանը։
Ահա մի օր, մեր բոստանչին
Բռնեց գողին...
Տուր թե կտաս՝
Գլխին, կողին։
Մեկ քաշում է աջ ականջը,
Մեկ քաշում է ձախ ականջը,
Բոստանով մեկ տարածվում է
Խեղճ շլդիկի լացն ու կանչը։
Ականջները հա ձգվում են
Ու երկարում,
Ինչպես որ կան
Այս նկարում։



## ԿԵՆԳՈՒՐՈՒ

Մ. ԹԱՐՅԱՆ

*Թե չես տեսել կենգուրու,*
*Գազանանոց գնա դու։*

*Տարօրինակ կենդանի՝*
*Փորի վրա պարկ ունի։*

*Ձագն ապրում է պարկի մեջ՝*
*Մոր հետ շրջում է անվերջ։*

*Երբ փոքրիկ է ու քաղցած,*
*Պարկից նա չի իջնում ցած.*

*Պուտկները մայրիկի*
*Այնտեղ՝ ներսում են պարկի։*

*Երբ մեծացավ նա արդեն,*
*Վազվզում է դես ու դեն։*

*Իսկ թե եկավ վտանգը՝*
*Փախչում, մտնում է պարկը։*



# ԸՆՁԱՌՅՈՒԾԸ

ՊՐԵՄ ՋԱՆԴ

(Հնդիկ գրող)

— Իսկ ես կգնամ։ Թույլ են տալիս, թե ոչ, միևնույն է՝ ես կգնամ անպայման…

Դպրոցի առջև գտնվող մեծ հրապարակում հավաքվել էին աշակերտները, որոնց մեջ կանգնած էր Բալդևը և, ձեռքերը գրպանները խրած, համոզում էր մյուսներին, որ նրանք էլ իր հետ գնան կրկես։

Բանն այն է, որ կրկես էր եկել նրանց քաղաքը և ներկայացումներ էր տալիս հրապարակում։ Քաղաքում հայտարարություններ էին փակցված, որտեղ ասված էր, որ ներկայացումներին մասնակցելու են զանազան վայրի գազաններ։ Ամենից ավելի, իհարկե, երեխաներն էին ուզում գնալ կրկես։ Առաջին ներկայացումը պետք է տեղի ունենար այսօր երեկոյան, բայց դպրոցի դիրեկտորը աշակերտներին խստիվ արգելել էր գնալ կրկես։

«Կրկես է եկել։ Կրկես է եկել։ Եկեք ու տեսեք։ Բացի այլ հետաքրքրական համարներից ցույց է տրվելու այնպիսի մի բան, որի նմանը դուք չեք տեսել երբեք և որի մասին դեռ ոչինչ չեք լսել», այդպես հրապուրելով՝ կանչում էին հայտարարությունները։

Քաղաքի բնակիչները թողնում էին իրենց գործերն ու շտապում դեպի կրկես։

— Ապա ինչպե՞ս,—ասում էին նրանք,—չէ՞ որ կրկեսը եկել է ուղղակի Բոմբեյից։

Ինքնին հասկանալի է, որ դպրոցականները բացի կրկեսից, այսօր ոչ մի բանի մասին չէին կարող մտածել։

Երեխաների առջև բաց գրքեր ու տետրեր էին դրված, բայց նրանք խոսում էին միայն առաջիկա ներկայացման մասին։

— Մի՞թե վագրը ջուր է խմելու ոչխարի հետ միևնույն ափսեից։

— Ինչպե՞ս կարող է մեծ փիղը գնալ հեծանիվով։

— Երևի այդ հեծանիվի անիվները շատ մեծ են լինելու։

— Մի՞թե թութակն, իսկապես, կրակելու է հրացանից, իսկ կապիկը ճաշելու է՝ սեղանի մոտ նստած։

Բալդևը նստած էր ամենահետևի նստարանին։ Նա բաց արեց թվաբանության տետրը և, մի վագր նկարելով, մտածեց.

# ՕԴԱՊԱՐԻԿՈՒՄ

«Ինչ լավ կլիներ, որ վաղը կիրակի լիներ, այն ժամանակ այսօր հարկավոր չէր լինի դաս պատրաստել»:

Բալդին մեծ դժվարությամբ հաջողվեց մի քիչ փող ձեռք բերել: Եվ այժմ նա մեծ անհամբերությամբ էր սպասում վերջին զանգին, որպեսզի վազի կրկես: Նրան արդեն հայտնի էր դպրոցի դիրեկտորի հրամանը, բայց մի՞թե դա կարող էր կանգնեցնել նրան:

Բայց միայն զանգը խփելուց հետո, Բալդը մյուս աշակերտների հետ դպրոցից դուրս եկավ հրապարակ և ասաց.

— Իսկ ես կգնամ: Թույլ են տալիս, թե ոչ, միևնույն է՝ ես կգնամ անպայման:

Թեպետև երեխաները շատ էին ուզում գնալ կրկես, բայց նրանցից ոչ ոք սիրտ չարեց խախտել դիրեկտորի հրամանը:

Բալդը պիտի գնար մենակ: Նա չէր ուրախանում առաջվա նման և իր հոգու խորքում գիտակցում էր, որ այնքան էլ լավ չի վարվում: Չէ՞ որ նրա բոլոր ընկերները մնացել էին դպրոցում և մենակ նա էր գնացել կրկես:

Բալդը տոմս ձեռք բերեց մի աննայով*) ու մտավ կրկես: Ներկայացումն սկսվեց: Բայց, չգիտես թե ինչու, Բալդին ոչ մի բան դուր չէր գալիս:

«Մի՞թե դա վագր է,—մտածում էր Բալդը:— Ամեն մեկի համար էլ պարզ է, որ նա հիվանդ է մի քանի ամիս շարունակ: Ո՞ւր են նրա ուժն ու գեղեցկությունը: Իսկ դա չես էլ հասկանում ա՞րջ է, թե՞ խոզ: Կարծես թե նա նոր է միայն վեր կացել ծանր հիվանդությունից հետո... Միայն ընձառյուծը լավ տեսք ունի»:

Բալդն արդեն ուրախ չէր, որ կրկես է եկել:

«Ես չլսեցի դիրեկտորին, չմնացի ընկերներիս հետ ու, բացի այդ, իզուր մի աննա ծախսեցի: Ես ձրիաբար էլ չէի համաձայնի տեսնել այդպիսի գազաններին», մտածում էր նա:

Դուրս գալով կրկեսից, Բալդն այնտեղից ոչ հեռու տեսավ մի մեծ օդապարիկ: Նրա մոտ կանգնած էր մի մարդ ու ճչում էր.

«Մոտեցե՛ք, մոտեցե՛ք: Չորս աննայով դուք կարող եք բարձրանալ օդապարիկով: Ընդամենը չորս աննայով»:

Հանկարծ Բալդը ինչ-որ մի աղմուկ լսեց իր ետևում: Նա շուռ եկավ, ու նրա ոտքերը թուլացան երկյուղից. ուղղակի դեպի նա էր վազում մի ընձառյուծ, որը, չգիտես թե ինչպես, դուրս էր պրծել իր վանդակից: Բալդն ինչքան կարող էր, արագ վազեց դեպի օդապարիկը:

Օդապարիկի մոտ կանգնած մարդը, տեսնելով դեպի իր կողմը վազող ընձառյուծին, պարանը բաց թողեց իր ձեռքից ու մի կողմ նետվեց:

Բալդը, չգիտենալով, թե ուր գնա, բարձրացավ օդապարիկի զամբյուղը: Բայց ընձառյուծն էլ նրա ետևից ցատկեց զամբյուղի մեջ: Եվ նույն ակնթարթին օդապարիկը բաժանվեց գետնից:

Բալդն ու ընձառյուծը... բարձրացան երկինք: Օդապարիկն արդեն հասել էր մինչ արմավենիների կատարներն ու շարունակում էր դանդաղորեն բարձրանալ:

Բալդը նայեց ներքև: Այնտեղ չտեսնված իրարանցում էր տիրում: Մարդիկ դես ու դեն էին վազում, աղաղակում էին ու թափահարում իրենց ձեռքերը: Ըստ երևույթին, նրանք ինչ-որ խորհուրդներ էին տալիս Բալդին: Բայց նա այնպես էր վախեցել, որ ոչինչ չէր հասկանում:

Որքան ավելի էր բարձրանում օդապարիկը, այնքան ավելի էր անհանգստանում ընձառյուծը: Նա ոչ մի կերպ չէր կարողանում հասկանալ, թե ինչ է կատարվում և որտեղ է գտնվում ինքը: Նա այնքան էր շփոթվել, որ ձեռք չէր տալիս երեխային: Գետինն ավելի ու ավելի էր հեռանում: Չհասկանալով, թե ինչ է կատարվում, ընձառյուծը նախ դես ու դեն ընկավ զամբյուղի մեջ և հետո հանկարծ դուրս ցատկեց նրա միջից, ընկավ գետին ու ջախջախվեց:

Մինչ այդ՝ Բալդը մտածում էր միայն ընձառյուծի մասին: Իսկ երբ ընձառյուծը ցատկել էր ներքև, արդեն նա կարող էր մտածել և իր մասին: Բալդն առաջ բարձրացել էր մինարեները: Վերևից մարդիկ տիկնիկներ էին թվում, իսկ տները կարծես թե խաղալիքներ լինեին: Իսկ այժմ նա շատ ավելի բարձր էր: Նա մտաբերեց, որ օդապարիկը իջեցնելու համար պետք է բաց թողնել նրա մեջ գտնվող գազը: Դրա մասին նա կարդացել էր ինչ-որ մի գրքում: Բայց նա չգիտեր, որ գազը պետք է բաց թողնվի նրա միջից հետզհետե:

Բալդը բաց արեց կափույրը միանգամից: Օդապարիկն սկսեց իջնել սարսափելի արագությամբ: Բալդը նայեց ցած. ինչպիսի՜ երջանկություն, օդապարիկն ընկնում էր ուղղակի գետի մեջ: Երբ բոլորովին քիչ էր մնացել, որ օդապարիկը հասնի ջրին, Բալդը բարձրացավ զամբյուղի եզրին և նետվեց ջրի մեջ: Նա լավ էր լողում և լողալով, առանց դժվարության ափ դուրս եկավ:

Ռուս. թարգմ. ԳՐ. ԱՐԵՅԱՆ

*) Ռուփիի 1/16 մասը:



ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

# 50

Ավելի քան երեսուն տարի առաջ էր: Թբիլիսիի հայկական դպրոցներից մեկում ուսուցիչներն ու դասընկերները շրջապատել էին գանգրահեր ու սևաչյա մի պատանու: Այդ օրը «Կարմիր ծիլեր» մանկական ամսագրում լույս էր տեսել նրա առաջին ստեղծագործությունը: Բոլորը շնորհավորում էին պատանի բանաստեղծին, խրախուսանքի խոսքեր ասում: Այդ ամենից ոգևորված նա սկսեց նոր ոտանավորներ գրել: Անցան տարիներ: Եվ ահա 1939 թվականին լույս տեսավ նրա առաջին գրքույկը՝ «Սոնիկի թռիչքը» վերնագրով: Այնուհետև լույս տեսան «Սահմանապահի որդին», «Անտառապահը», «Շողիկներ», «Ուրախ օր» գրքույկները: Իսկ 1952 թվականին լույս տեսավ բանաստեղծի ստեղծագործությունների ժողովածուն ռուսերեն:

Վազգեն Տալյանը ճանաչված մանկական գրող է: Ո՞վ չգիտե նրա նշանավոր «Փիղը» բանաստեղծությունը, հապա «Ճայրուկը», «Պարանախաղը» և մյուսները: Վ. Տալյանի ստեղծագործությունները հաճախ տպագրվում են թերթերում, ամսագրերում և դասագրքերում:

Դեկտեմբերի 10-ին լրացավ մանկական գրող Վազգեն Տալյանի ծննդյան հիսուն տարին:

## Ճպուռը

*Ա՜խ, Ասքանազ, Ասքանազ,*
*Դու ե՞րբ պիտի հասկանաս...*

*Տարին նկավ վերջացավ,*
*Խն Սեթոն էլ լրքացավ,*
*Իսկ դու ծեզից իրիկուն*
*Հա՛ խաղում ես ձեր բակում:*

*Ոչ դաս սերտել ես սիրում,*
*Ոչ բան սարքել ես սիրում,*
*Ոչ գիրք կարդալ, ոչ գրել,*
*Ոչ նկարել, ոչ կարել...*

*Մեկ էլ կգաս.—Մայրի՛կ, ճաշ...*
*Բոքոն չկա, տուր լավաշ:*

*Ուտում ես ու, հայդե՝ բակ,*
*Ջեռքիդ ցեխոտ մի գնդակ:*

*Մեկ գալիս ես՝ ջո՛ւր, թեյ տուր,*
*Մեկ հևալով կանչում՝ ջո՛ւր...*
*Խմում, վազում դեպի դուռ,*
*Ինչպես անհոգ մի ճպուռ:*

*Այսպես, մինչև երեկո*
*Տուն է կանչում տատը քո...*
*Ուշ գալիս ես, ուշ քնում.*
*Հագիդ շորն էլ չես հանում:*

*Ա՜խ, ե՞րբ պիտի ուշքի գաս,*
*Ա՛յ դու ճպուռ Ասքանազ...*




*Խուխում է խոզուկս,*
*Տնքտնքում է թզուկս...*
*Ես բռնում եմ՝ ճչում է,*
*Բաց եմ թողնում՝ թռչում է:*

*Մոտ է վազում Նինիկը,*
*Գրկին փոքրիկ տիկնիկը.*
*—Էլ մի կանգնիր, ջուր բեր, ջո՛ւր,*
*Բռնիր դրան, դեսը տուր...*
*Բաղնիք անենք՝ չոփչոփիկ,*
*Մաքրենք գլուխ ու պոչիկ:*
*Դույլով ջուրը բերեցի,*
*Բայց հենց պոչը բռնեցի,*
*Խոզը ճղղաց, փախավ նա,*
*Իսկ ես՝ շրը՜մփ... դույլի հետ...*

*Ոտից գլուխ ջուր դառա.*
*Իսկ խոզուկը խռխռան*
*Ման է գալիս պարտեզում*
*Ու լողանալ չի ուզում:*




Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Արեգակն ամբողջ ցերեկը լույս տվեց, հոգնեց ու գնաց քնելու…

— Մթնեց,— հանկարծ նկատեց Գագիկն ու տուն վազեց:

Նա աղմուկով դուրս քաշեց գրասեղանի դարակը, դասագրքերը հանեց, բաց արեց մայրենի լեզվի դասագիրքը, փորձեց կարդալ, բայց նայեց մահճակալին հանգիստ քնած քրոջն ու, չգիտես ինչու, քունն այնպես տարավ, որ գիրք ու տետր մոռացած, մի կերպ հավաքեց…անկողին մտավ:

Բոլորը քնեցին: Արթուն մնաց միայն գիշերային լամպը և մեկ էլ՝ քամին: Նա պտտվեց պուրակում, խշխշացրեց տերևները, ապա շունչը պահած մոտեցավ լուսամուտին, զնգզնգացրեց ապակիները ու փախավ…

Հանկարծ կիսախավարի մեջ մեկը հառաչեց. «Ա՜խ…»:

Լամպը առկայծեց ու վախեցած նայեց ցած:

Մի անդրավարտիք էր, տասը տարեկան տղայի շագանակագույն, թավշյա, կարճ անդրավարտիք:

Երկու խոշոր մուկ ախորժակով ծամծմում էին նրա գրպանն ու բավականությունից ծվծվում.

— Ինչ համեղ կարկանդակ է,— ասաց մկներից ավագը,— շատ համեղ է, չէ՞:

— Ը՜մ… շատ համեղ է,— հազիվ լիքը բերանը բանալով պատասխանեց կրտսեր մուկը,— երանի Գագիկն ամեն օր մի համով պատառ պահի մեզ համար. ես կարկանդակ շատ եմ սիրում:

— Բայց, ծվծվան, դու կարկանդակի հետ կրծել ես նաև Գագիկի անդրավարտիքի գրպանը: Տես, նա կհասկանա և այլևս գրպանում ոչինչ չի դնի:

— Շատ էլ մի անհանգստանա, մուկ եղբայր, Գագիկն այնքան բկլիկն է, որ եթե գրպանում էլ չդնի, նրա պայուսակում միշտ մի բան կգտնվի մեզ համար,— ասաց երրորդ մուկը, որ ներս էր խցկվել դռան տակից,— Նրա օրագիրը մի ամբողջ պատմություն կարող է պատմել այդ մասին:

Մկները նայեցին օրագրին…

— Ինչ յուղոտ է…

— Ինչ անուշ բուրմունք ունի…

— Մի րոպե չեմ կարողանում բեղիկներս չշարժել, ա՜խ, այդ յուղի հոտը…

Ծվծվացին մկները, մոտեցան օրագրին, բայց…իսկույն ետ ընկըրկեցին:

— Ինչ կեղտոտ է…

— Նույնիսկ յուղի հիանալի հոտը չի կարող ստիպել ինձ նրան մոտենալ:

— Թե իմ մկնիկներն այդպես կեղտոտ լինեին, ես նրանց ուղղակի կատվի ճանկը կնետեի:

— Ծածկվիր, ծածկվիր, օրագիր…— 22նչաց հին գրասեղանը:

Օ ր ա գ ր ի աչքերից արցունքի երկու խոշոր կաթիլներ ընկան:

— Նա լալիս է. խե՜ւճ օրագիր…— ասաց գիշերային լամպը:

— Իսկ ես ինչո՞վ եմ մեղավոր, որ տասներկու թերթերից




միայն վեցն են մնացել. -թընկթընկաց թվաբանության տետրը. —ուսուցիչը վերից-վար գծել է վրաս ու կարմիր թանաքով գրել...

«Ամբողջովին սխալ է. մեկ...»:

— Իմ վիշտը քոնից խորն է. թվաբանության տետր. ապա ինձ նայիր,—ասաց մի դասագիրք. որի կազմի վրա վերնագրից միայն մի բառ էր մնացել: — Ճանաչեցի՞ք... այժմ ինձ ոչ ոք չի ճանաչում. իմ 164 թերթերից շատերը չկան: Մի քանի օր առաջ ուսուցչուհին ինձ ձեռքն առավ. ա՜խ, ինչքա՜ն ես ուրախացա... Եթե թղթից չլինեի պատրաստված, անպայման կշիկնեի: Ուսուցչուհին ինձ ձեռքն առավ. բայց... զայրացած դեն նետեց: «Սա ի՞նչ դասագիրք է. թերթերի կեսը չկա: Ո՞վ է սրան այս օրը գցել»:

Բոլորը իրար նայեցին: Գագիկն էլ ընկերներին նայեց: Կարծես ոչ թե իր, այլ ուրիշի դասագիրքը լիներ:

Մկները միմյանց նայեցին ու բարկացած շարժեցին բեղիկները:

— Բայց թերթիկներդ հո մենք չենք կրծել. մայրենի լեզվի դասագիրք,—հարցրեց մեծ մուկը,— մենք ձեզ շատ ենք հարգում, դուք այնքան գիտուն եք:

— Ես տեսա, ես տեսա,—ճըռճըռաց գրչածայրը. որին Գագիկն այնքան էր նստարանից ցած գցել, որ եղջյուրներից մեկը կոտըրվել էր:—Ես աչքովս տեսա, կուզե՞ք թանաքամանին հարցրեք: Թանաքամանի մեջ ոչ մի կաթիլ թանաք չկա... Գագիկը գրքի թերթերից «նավակներ» է պատրաստում:

Հանկարծ գրասեղանի տակ քստքստոց լսվեց: Մկները վախեցած լուսամուտի գոգը բարձրացան. դասագիրքը ծալեց կտրտված թերթերն ու լռեց:

— Դե, իհարկե, պայուսակն է,—ճստճստաց մեծ մուկը ու լուսամուտից ցած իջավ,—այնպես փոխվել է, որ միանգամից չճանաչեցի...այն ժամանակ նա բոլորովին նոր էր. բոնիչն ամուր էր, փակը՝ փայլուն: Նրա մեջ միանգամից կարելի էր տեղավորել երրորդ դասարանի բոլոր դասագրքերը:

Դասագրքերը հառաչեցին.

— Մեր հոգսը մեկն է,

Սրանը՝ տասնմեկը...

Գիշերային լամպը մի պահ թարթեց աչքերը: Աչքերից թափվեցին արցունքի կաթիլներն, ու կրկին սկսեց լուսավորել շուրջը...

Քամին վայրացած զրնգացրեց լուսամուտի բոլոր ապակիներն ու մտավ ծխնելույզի մեջ. չէ՞ որ այնտեղ ոչ դասագրքեր կային, և ոչ էլ ինքը՝ Գագիկը:

Մկները բարձրացան ետին ոտքերի վրա ու նայեցին Գագիկին... Նրա վրայով. երկար բեղերը շարժելով. արագ-արագ ետ ու առաջ էին վազվզում մուգ շագանակագույն բզեզները. Նրանցից, որ լինում են կեղտոտ պահարաններում և խոհանոցների դարակներում:

— Ինչպես էլ իրենց տեղը գտել են,—ճստճստացին մկները:

Գիշերային լամպը ոչինչ չասաց: Նա տխուր նայեց շուրջը, կծկվեց, փոքրացավ:

Գագիկն աչքերը բացեց...«Գուցե երազում եմ տեսնում... և ո՞վ է բաժանում այս հիմար երազները, կարծես կարգին երազ տալ չէին կարող...Ասենք թե...բոլոր դասերս սովորած գնում եմ դըպրոց...կամ թե...», և աչքն ընկավ գրասեղանին դրած դասագրքին: Աթոռի տակ ընկած էր պայուսակը... բլուզի թևից պատի վրա ստվեր էր ընկել, կարծես կոկորդիլոսի բերան լիներ... տետրակի ծայրը դուրս էր ցցվել բարձի տակից...

Գագիկը փորձեց աչքերը փակել:

— Քունս տանում է,—Նույնիսկ 22նջաց նա, վերմակով ծածկեց երեսը.—Հիմա կքնեմ...

Բայց քունն արդեն փախել էր...

# ԴԱՍԸ ՉԻՄԱՆԱ, ԿԱՏՈՒՆ ՄԱՅԱՆԱ

Նկ. Օ. ՄՍՐՅԱՆԻ

Ա. ՄԱՐԳԱՐՅԱՆ



—Փիսիկ, մի քիչ խելոք մնա,
Ի՞նչ ես գժվել, ա՛յ մոստան.
Չես թողնում, որ դասս կարդամ,
Վա՜յ, ի՞նչ անեմ ես սրան:

Թո՛ղ, դաս անեմ սովորելու,
Ուշք ու միտքս մի՛ տանի,
Իմ տեղ դո՞ւ ես դաս պատմելու,
Վա՜յ, էսպես էլ կենդանի՞:

Տանը գլուխն իր օրորեց
Ու փիսիկին դուրս տարավ,
Իսկ հիմա էլ, ո՜նց պատահեց,
Մի ճանճ գրքից ներս թռավ:

—Քշա, ա՛յ ճանճ, ա՛յ քեզ խայթա,
Կատվից հազիվ թե պրծանք,
Հիմա էլ դո՞ւ, դե թող գնա,
Քշա՛, էս էլ նոր փորձանք:

Ճանճի ձեռքից այդ անիրավ՝
Գիրքն այդպես էլ մնաց փակ,
Ծույլ տղայի քունը տարավ՝
Պայուսակը գլխի տակ:

# ՋԻՆՈՉԿԱՆ ՕԳՆՈՒՄ Է

ՅՈՒ. ՍՈՏՆԻԿ

(Ֆելիետոն)

— Մայրիկ,—ասաց Ջինոչկա Սվերչկովան,—ես հիմա. կգնամ Տոսյայի մոտ, որովհետև Տոսյայի ատամը երեկ ցավում էր, նա չէր գնացել դպրոց։ Իսկ երեկ թվաբանությունից մեզ բացատրեցին նոր կանոն՝ «Թվերի բաժանումը պարզ բազմապատկիչներին»։ Տոսյան դասը բաց է թողել և հիմա ոչինչ չի հասկանում։ Ես պետք է օգնեմ նրան։

— Իհարկե, գնա, — պատասխանեց մայրիկը։

— Լավ ես անում,— ավելացրեց հայրիկը,— միշտ պետք է օգնել իրար։

Ջինոչկան հագավ մուշտակը և դուրս եկավ։ Հինգ րոպե հետո նա արդեն բախում էր Տոսյայենց բնակարանի դուռը։

Դուռը բաց արեց ինքը, Տոսյան։

Նրա կլոր երեսը կարմրել էր, մուգ հյուսքերը գզգզվել, իսկ աչքերը նայում էին վախեցած։

— Օ՜յ, Ջինի՛...—ասաց նա ընդհատ-ընդհատ, — ոչինչ չեմ հասկանում։ Օ՜յ... գիտե՞ս, ես վախենում էի, որ դու չես գա։

Ջինոչկան վրդովվեց.

— «Զե՛մ գա»․ Տոսկա, քեզ ուղղակի ամոթ է այդպես խոսել։ «Չեմ գա»․ ես ուղղակի վատ ընկերուհի կլինեի, եթե չգայի։ Մի՞թե ես կարող եմ հանգիստ նստել տանը, երբ քո գլխավերևում «երկուս» է ճոճվում։ Մինչև անգամ ավելի լավ է ես ինքս չեմ սովորի դասը, բայց ընկերուհուս կօգնեմ. ես...ես, նույնիսկ, կարող եմ ինձ զոհել և «երկուս» ստանալ, միայն թե օգնեմ ընկերուհուս։ Քո ծնողները տա՞նն են։ Հյո՞ւր են գնացել։ Եվ շատ լավ է, և սքանչելի է։ Համենայնդեպս, չեն խանգարի մեզ պարապել։

— Հասկանո՞ւմ ես, — ասաց Տոսյան,—ես արդեն մեկ ժամ է նստած եմ, նստած եմ և ոչինչ դուրս չի գալիս։ Երբ կարդում եմ կանոնը, կարծես թե ամեն ինչ հասկանում եմ, իսկ երբ սկսում եմ օրինակները լուծել՝ չի համընկնում պատասխանի հետ։

— Դե, այստեղ ոչ մի սարսափելի բան չկա, մենք հիմա քեզ հետ միասին կլուծենք, և դու բոլորը կհասկանաս։ Ա՛յ, կտեսնես, կես ժամից հետո բոլորը, բոլորը կհասկանաս։ Հիմա ժամը քանի՞սն է։ Յո՞թը։ Ա՛յ, կտեսնես, մինչև յոթ և կեսը մենք բոլորը կվերջացնենք, և դու ամեն ինչ կհասկանաս։

Ընկերուհիները կողք-կողքի նստեցին սեղանի մոտ, որի վրա բաց վիճակում դրված էին դասագրքերը և տետրակները։

Պարապմունքն սկսվեց։

— Անա,— ասաց Զինոչկան, նայելով դասագրքերին։— Չորս հարյուր քսանը բաժանել բազմապատկիչների։ Ի՞նչ պետք է անենք. գտնում ենք ամենափոքր պարզ թիվը։ Իսկ ի՞նչ բան է պարզ թիվը։ Դա այնպիսի թիվ է, որը առանց ավելցուկի բաժանվում է միայն «մեկի» կամ «իր» վրա։ Ա՛յ, օրինակ, մեր ջոկատում երեսունմեկ հոգի ենք։ Քանի օղակի էլ մեր ջոկատը բաժանես, միևնույն է, հավասար օղակներ չեն ստացվի։ Օրինակ, մեզ մոտ չորս օղակ կա. առաջին, երկրորդ և չորրորդ օղակներում կա ութական հոգի, իսկ երրորդում՝ միայն յոթը։ Ճիշտ է, երրորդ օղակը չնայած փոքր է, բայց փոխարենը ամենահամերաշխն է և լավը։ Գիտե՞ս ինչու։ Որովհետև նրանց օղակավար Օլյա Կրյուչկովան շատ լավն է, նա և լավ սովորում է, և դասարանի լավագույն սպորտսմենուհին է... Գիտե՞ս, նա ինչու է այդքան լավ սպորտսմենուհի. նրա մեծ եղբայրը սպորտի վաստակավոր վարպետ է, իսկ փոքր եղբայրը, նրան Միշկա են կանչում, դեռ տանն էլ Մինիչկա... դա մի այնպիսի խուլիգան է, այնպիսի խուլիգան, ուղղակի սարսափելի է։ Մի անգամ ես նրանց մոտ էի. ուղղակի հնարավոր չէր նստել. միայն ռեզինից թղթի կտորներով կրակել ու կրակել գլխի. կրակել ու կրակել...

— Զին,— ընդմիջեց Տոսյան,— դե, իսկ հետո, չորս հարյուր քսանը ինչպե՞ս...

Զինոչկան մոտ քաշեց դասագիրքը։

— Այդպես ուրեմն. պետք է գտնել ամենափոքր պարզ թիվը, որի վրա բաժանվում է չորս հարյուր քսանը։ Իսկ ինչպե՞ս գտնել այդ թիվը։ Այստեղ կարևոր է հիշել, թե բաժանելիության ինչպիսի հատկանիշներ կան։ Ա՛յ, երեկ Նադյա Կոչկովան օրինակը լուծելու համար մոտեցավ գրատախտակին, իսկ բաժանելիության հատկանիշները մոռացել էր։ Կանգնած է գրատախտակի մոտ ու լռում է



ինչպես ձուկ։ Մինչև անգամ ձուկը երբեմն պակաս համր է լինում։ Մի անգամ գյուղում, հայրիկը իմ ներկայությամբ մի խոշոր կարմրախն բռնեց. ես ձուկը վերցրեցի ձեռքերիս մեջ, երբ նա դեռ ողջ էր. իսկ նա բերանը բաց է անում և ծվծվում է։ Կամացուկ, ա՛յ, այսպես. «ծը՜վ, ծը՜վ»։ Դու տապակած կարմրախն սիրո՞ւմ ես։

— Այնքան էլ չէ, ես ամենից շատ շիլաձուկ եմ սիրում։

— Դե, եթե շիլաձուկ է, ուրեմն տոմատով։ Գիտե՞ս, այդպիսի պահածոներ են լինում. «Շիլաձուկը տոմատով»։ Հիշո՞ւմ ես, իմ տարեդարձին մենք կերանք «Շիլաձուկը տոմատով»։ Հենց այդ օրն էլ Բորկա Ռիբկինը, պատահաբար Նինա Օզերսկայի հագուստին կոմպոտ թափեց։ Ինչպե՜ս էր նա այն ժամանակ հուզվել այդ հագուստի համար։ Այնպե՜ս էր հուզվել, և բոլորը իզուր։ Որովհետև կոմպոտի բիծը հետո ամբողջությամբ դուրս եկավ։ Գուշակի՛ր, ինչպե՞ս։

— Զին, դե, ուրեմն գտնում ենք ամենափոքր պարզ թիվը, իսկ հետո ինչպե՞ս...

— Այդպես ուրեմն։ Գտնում ենք ամենափոքր պարզ թիվը։ Ո՞րը կլինի ամենափոքր պարզ թիվը, որի վրա բաժանվում է չորս հարյուր քսանը։

Դա կլինի «երկուսը»։ Ի՛ միջի-այլոց երեկ Կատյա Ժեյտուխինան թելադրությունից նորից «երկու» ստացավ։ Մի էջի վրա ինը սխալ է արել։ «Շոգենավ» բառը «շոքենավ» էր գրել։ Դու երբևէ նավով ճամբորդե՞լ ես։

Երբ Տոսյայի ծնողները վերադարձան, ընկերուհիներին գտան իրենց տեղում։

Տ ո ս յ ա ն շշմած՝ աչքերն էր թարթում, իսկ Զինոչկան պատմում էր նրան այն մասին, թե ինչպես են ապրում և սնվում Նեղոսի կոկորդիլոսները։

Հաջորդ օրը, թվաբանության դասին, Տոսյան կանգնած էր գրատախտակի առաջ և նորից աչքերն էր թարթում։ Իսկ Զինոչկան այդ ժամանակ քչփչում էր ընկերուհու ականջին.

— Այս արդեն, ուղղակի, ինչ-որ սարսափելի բան է. երեկ գիշեր ամբողջ երեք ժամ ես նրա հետ պարապել եմ, և միևնույն է, ոչինչ չի հասկանում։

Այդպես էր ասում Զինոչկան. իսկ մենք ձեզ կասենք, երեխաներ, ընկերական օգնությունը ուսման մեջ շատ պիտանի և հ ա ր կ ա վ ո ր բան է, բայց եթե երբևէ ձեզ օգնել ուզենա Զինոչկա Սվերչկովան՝ չհամաձայնվեք։

Խնդրեք թող մեկ ուրիշը ձեզ օգնի։

# ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Քամին վազեց, մտավ արագ
Այգի, փողոց, հրապարակ,
Սուլեց իբրև ահեղ գուժկան.
—Հե՜յ, ձմեռն է գալիս դաժան։
Թե խելք ունեք, խոսքս լսեք
Ու ձեր գլխի ճարը տեսեք...

Հենց որ լսվեց ահեղ բոթը,
Թռչնեց իսկույն դաշտի խոտը,
Տերևները ողջ դեղնեցին,
Ծաղիկ-ծաղկունք թառամեցին։

Իսկ կանաչներն աշնանացան
Չտխրեցին, չվախեցան.
Ծափ տվեցին ու պարեցին.
Խելառ քամուն լավ ծաղրեցին.

—Ա՛յ դու, փչան, զուր ես խոսում,
Ձմռանն իսկի մենք չենք մրսում.
Մուշ-մուշ անուշ քնում ենք տաք
Ձյունե փափուկ վերմակի տակ։

Ծույլ արջուկը երբ որ տեսավ
Ցուրտ ձմեռը վրա հասավ,
Ահից դողաց, ուշքը գնաց,
Մնաց իր մութ որջում քնած։

Մինչդեռ ճարպիկ նապաստակը
Հագավ տաքուկ, նոր մուշտակը,
Վազեց ձյունոտ սարը ճերմակ,
Պարեց քամու նվագի տակ։

Զարաճճի ու շատախոս
Առվակներն էլ արագահոս
Պաղպաղակի պես սառեցին,
Թաքնվեցին ու լռեցին։

Իսկ, ա՛յ, զուլալ մեր աղբյուրը
Չպղտորեց անգամ ջուրը,
Բխում է դեռ խորունկ ակից,
Հին, մամռապատ ժայռի տակից։

# Ի՞ՆՉ Է ԳՐՎԱԾ ԱՅՍՏԵՂ

Տրվում են հետևյալ թվերը. 12, 15, 30, 56, 4, 64, 20, 9, 49, 56, 24, 28, 42, 40: Այս թվերից յուրաքանչյուրը երկու թվերի արտադրյալ է: Պետք է գտնել արտադրիչները և աղյուսակից վերցնել այդ արտադրիչների ուղղահայաց և հորիզոնական շարքի հատման տեղում եղած տառը: Օրինակ. 42-ը 6-ի և 7-ի արտադրյալն է: Ինչպես սլաքներով ցույց է տրված, այդ թվանշանների դիմաց գրված է «ր» տառը:

Այս ձևով աղյուսակից հերթականությամբ ընտրելով տառերը, ճիշտ լուծման դեպքում դուք կկարդաք ռուս մեծ բանաստեղծի ազգանունը և նրա պոեմներից մեկի անունը:

| | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 |
|---|---|---|---|---|---|---|---|
| 2 | Ո | Ջ | Մ | Կ | Լ | Ա | Հ |
| 3 | Գ | Ո | Ա | Ե | Ք | Ջ | Ձ |
| 4 | Ո | Լ | Թ |Ր | Ծ | Ի | Պ |
| 5 | Ճ | Ե | Տ | Թ | Ր | Կ | Ս |
| 6 | Ս | Դ | Ծ | Ա | Ջ | Ր | Խ |
| 7 | Բ | Մ | Ի | Ա | Ր | Վ | Մ |
| 8 | Ա | Է | Ը | Ի | Վ | Մ | Ն |

## ՌԵԲՈՒՍ

Այս գրքի վրա գրված է նրա անունը: Կարո՞ղ եք կարդալ:

Առաջարկ՝ Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ






## ԿՐՈՍՎՈՐԴ-ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

### ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. Գարուն, ամառ քիթը կախ,
Ձմեռն եկավ՝ ծափ-ծիծաղ:

2. Դաշտի զարդ է, գույնը՝ ալ,
Ամեն թերթին՝ մի սև խալ:

3. Ջուրն է մտնում ամեն օր,
Բայց մնում է միշտ էլ չոր:

4. Քաղաք կա, տուն չկա,
Ծով կա, ջուր չկա:

6. Գալիս անտես փարվում է,
Առանց ավել ավլում է,
Բերան չունի, սուլում է,
Ոտքեր չունի, վազում է:

8. Կլոր է, գնդակ չէ,
Ճերմակ է, բամբակ չէ:

10. Արտը հնձեց, բերանն առավ,
Ծամեց-ծամեց, բայց չկերավ,
Գնաց, եկավ արագ-արագ,
Կալսեց, դարսեց ողջը մենակ:

12. Այն ի՞նչ է, ի՞նչ. հեռու մեզնից,
Լույս է տալիս, մարում լույսից:

13. Խորամանկ է, պոչը՝ թավ,
Շատ է սիրում չաղլիկ հավ:

16. Լեզուն զունդ,
Ձայնը թունդ:

18. Ի՞նչ զնդակ է՝ մեջը լի,
Մարգարիտներ ու գինի:

15. Երկու դանակ են միշտ փարվում իրար,
Երկուսով ունեն միայն մի բերան:

17. Արմատ ունի, ցողուն ունի,
Բայց մի հատիկ տերև չունի:

19. Ինչ թռչուն է անապատի,
Որ չի թռչում, ման է գալիս,
Նժույգից լավ վազել գիտի:

20. Շեմքի վրա գնում-գալիս,
Բայց նա երբեք ներս չի գալիս:

21. Ծնվում է նա լճակում՝
Ոտքեր չունի, պոչ ունի,
Մեծանում է ցամաքում՝
Ոտքեր ունի, պոչ չունի:

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ



ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

5. Ամառ ունեմ մի պուճուր,
Միջին կապույտ գույնի ջուր:

7. Գյուղը ունի ջատ վաղուց
Եվ մի ուրիշ ժամացույց:

9. Զորս եղբայր են միատեսակ,
Ծածկել են լայն մի մեծ գլխարկ:

11. Սահնակ չէ, բայց սահում է,
Գութան չէ, բայց վարում է,
Ինչքան սահի ու վարի,
Նա ոչ մի հետք չի թողնի:

14. Առած գլխիս երկու ծառ,
Թռչկոտում եմ սարե-սար:






## ՓՈՔՐԻԿ ՎԵՆԵՏԻԿԸ

1499—1502 թվականներին դեպի Նոր Աշխարհի ափերը կատարած իր նավագնացության ժամանակ Ամերիգո Վեսպուչին հասավ Մարակաիբո նեղուցին, որտեղ նրան շատ զարմացրին ցցերի վրա կառուցված բնիկների տները։

Մի ֆլորենցիացու գրած նամակում Ամերիգոն հայտնում էր, որ այնտեղի գյուղերը նման են Վենետիկին, տները կանգնած են հենց ջրի մոտ և իրար հետ կապված են կամուրջներով։

Նեղուցի այդ ափը, որտեղ գտնվում էին գյուղերը, Ամերիգոն անվանեց Վենեսուելա, որը նշանակում է փոքրիկ Վենետիկ։

Հետագայում սկսեցին Վենեսուելա կոչել Հարավային Ամերիկայի հյուսիսային ծովափին ընկած այն երկիրը, որի տարածությունը մոտ մեկ միլիոն քառակուսի կիլոմետր է։

## ԿԱՆԱՉ ԱՐՁԱՆՆԵՐ

Դուք կարծում եք այս արձանները քանդակագո՞րծն է պատրաստել։ Ոչ, դրանք հնդիկ վարպետ այգեգործների հիանալի ստեղծագործություններն են։

Աճեցնելով մշտադալար ծառեր (կարմրածառ, սամշիտ) և թփեր, տաղանդավոր վարպետները կտրատում, խուզում և աստիճանաբար նրանց տալիս են բազմապիսի ձևեր։ Բոմբեյի Մալաբարա բլրի վրա գտնվող Կախված այգում կարելի է հանդիպել հեծյալների, սիրամարգների, զարմանալի թռչունների ու կենդանիների։

Երկար տարիների աշխատանք է հարկավոր այս կամ այն ձևը աճեցնելու համար։





Նկարներում դուք տեսնում եք Բոմբեյի Կախված այգում «աճած» «փիղը» և «ընձուղտը»։

**Խմբագրական կոլեգիա**

ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.։

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06

ՎՖ 11097. Պատվեր 1359. Տիրաժ 5000։ Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 16/XII 1957 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։

Գինը 2 ռ.



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Համարի գեղարվեստական ձևավորումը՝ նկարիչ ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ՊԱՏՐԱՍՏԻՐ ՏՈՆԱԾԱՌԻ ՀԱՄԱՐ



Տոնածառի համար կարող եք և ինքներդ խաղալիքներ պատրաստել: Ներքևում նկարված ձևվածքը արտանկարեք հաստ թղթի վրա, գունավոր մատիտներով ներկեք, ծալեք գծիկներով ցույց տրված տեղերը, իսկ գլխի և պոչի կեսերը սոսնձով կպցրեք: Շնիկի ականջները ծալեք այն ձևով, ինչպես ցույց է տրված նկարում: Նույն եղանակով կարելի է պատրաստել նաև նապաստակ, աղվես և կատու, միայն հարկավոր է շնիկի ձևվածքի վրա շան գլխի ու պոչի փոխարեն արտանկարել ցանկացած կենդանու գլուխն ու պոչը: Նախքան խաղալիքը փակելը, նրա մեջ կարելի է նվեր դնել, հետո նոր սոսնձել: Տոնածառի ժամանակ այդպիսի խաղալիքը կարելի է նվիրել ընկերոջը:

# ՀՆԱՐԱԳԵՏ ՄԿՆԵՐԸ













Նկ. Ռ. ԲԱԲԱՅԱՆԻ